

Սիրելի հայ մայրեր, հայրեր, երիտասարդ-երիտասարդուհիներ, եղբայրներ և քույրեր, ձեր ութ ամսվա տառապանքը և անվհատ պայքարը այս հեռավոր ափերում ինձ մղեցին գրելու այս տողերը:

Ճիշտ է, ես անծանոթ եմ եղել մոտիկից Ղարաբաղի իմ արյունակիցների ապրումներին, նրանց հետ ֆիզիկապես ներկա չեմ եղել հոգեմաշ ցույցերին, բայց նրանց խռովքը համակեց նաև ինձ, նրանց արթնացումը ցնցեց ինձ:

Սիրելիներս, կիսելով ձեր ցավը, պահանջը, բողոքը, միանում եմ ձեզ: Ձայնս խառնած ձեր արդար ձայնին ու բռունցքս սեղմած ձեր թափահարվող բռունցքներին, ես էլ գոռում եմ... ՂԱՐԱԲԱՂ:

ԱԼԻՍԻԱ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ
Հոկտեմբեր, 1988

# ՂԱՐԱԲԱՂ

ԱԼԻՍԱ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Նիե՛տ:
Բացարձակապես ո՛չ:

Հրամանը վերից եկավ.
վարը միայն ցուրտ քամի մնաց,
ձյուն ու բուք՝
վշտերի անկյուններում
սառեցնելու համար
արցունքները չծնած:

Այս ի՞նչ խելագար տենչանք է՝
մերը մեր կոչել,
մերը տուն բերել:
Մերը կարող են լինել միայն
պակասն ու զրկանքը,
ցավն ու տառապանքը,
գերությունը,
կոտրած ողնաշարը:
Մենք միայն կարող ենք տալ,
արյունաքամ լինել:
Հետո... ի՞նչ ենք ուզում:
Էլ ի՞նչ են ուզելու մեզնից:
Այսօր «ոչ» է պատասխանը:
Ոչի՞նչ:
Ոչինչ:
Ո՛չ:
Հազար անգամ ո՛չ:
Տոնակատարությունն է ոչնչի:

Եվ այդ անիմաստ,
անխիղճ,
ոչերի ու ոչնչի դեմ՝



Լուսանկարները՝ ԶԱՎԵՆ ԽԱՉԻԿՅԱՆԻ

այնչափ փոքր եմ զգում ես ինձ:
Որքան ձայնս եմ երկարում,
այնքան լսողներն են հեռանում:
Որքան ձեռքս եմ երկարում,
այնքան ապագան է հեռանում:
Ու բողոքս
տպվում է իբրև քերթված
հղացած ամպերում,
օդի ալիքներում:

Բայց սպասող ժողովրդիս
բողոքները կուտակված
տողանցում են դեռ
ոչերի պողոտաներում
ու դեռ սուգ են հավաքում
անընդհատ:
Կյանքի համբույրը շոգիանում է,
ու մահու հրեշտակը
Դուրյանի տեսիլքի պես
դժգույն չէ այլևս,
գունավոր է ու փայլուն՝
անված
Սումգայիթի կարմիրով:

Ու հսկա մահվան դիմաց
զգում եմ ցնցումը արյունիս,
որ պայքար է մղում
ոչ միայն երակներիցս ներս,
այլ դուրս է նետվում,
մղոններ կտրում
ու հասնում Ղարաբաղ՝
ձուլվելու համար
ինձնից կիսված արյունիս հետ:

Ես այս եմ և այն:
Կյանք եմ ու մահ:

Ողջ ազգը ապրում է իմ մեջ:
Բորբոքած սրտումս եմ շալակել
վախի հացով հագեցած երեխաներին,
կացնահարված երազներով
ծունկի եկած եղբայրներին:

Ես հոս եմ ու հոն:
Լույս ու խավար:

Գիշերվա հրեշը ճմռել է
Արցախի տները,
տների մեջի հոգիները,
հոգիների մեջի հավատքը:

Քարտեզի աննշան անկյունում
մի սև պարապություն տիրում է
գերեզմաններով ծանրացած,
և որքան էլ դուրս հրենք
պարապությունն այն սև՝
գերեզմանների ծանրությունը մնում է
որպես հույսի քմծիծաղ:

Ամեն ինչ խառնվել է:
Այսօրը երեկ դարձել,
երեկը՝ վաղ,
պատմության խաղերով ենք մենք հարբել,
ցնորքի իրողությամբ,
երբ անիրավությունը մեր դուռն է զարկում
ու մեր վաղը խորտակում:

Ինչպե՞ս բացակա չզգալ իրավունքից:
Ինչպե՞ս անդունդը չորդեգրել գոյությունից:
Ինչպե՞ս չհայհոյել արդարությանը:

Տարիներ շարունակ
չորացած ու փոշիացած ճիչերը մեր
ցիրուցան էին արվել
շիրիմների վրա մոռացված
ու ժամանակի ձայնը լճացած
լռություն էր կաթկթում
թանձր,
խոր՝
որպես չգրված գիրք,
չպատմված երազ:

Այդ լռությունը խլացրել էր մեզ,
և անկարողությունը խոսքի
անգութ մատներով
մեր հոգին էր խեղդել:
Բայց այսօր
ցամաքած
հավիտյան սպասումից՝














այդ նույն լռությունը,
նույն անկարողությունը
դուրս են եկել
գերեզմանների խաչերից,
անձնասպան են եղել
և ծնունդ են տվել
մի նոր ձայնի,
ուր ներկա է
հին ձայների
ճշմարտության ալքիմիան,
որ լույս է գումարում
նոր խոսքին
և ուժ է սրսկում
նոր ճիչին:

Հակալռության իշխանությունն է
արձանագրվել
քաջության էջերում:
Այո՛:
Մենք խոսք ունենք ասելու:
Այո՛:
Մեր վերքերն են աղաղակում,
որ երկրագնդի մասնիկն իսկ
հասկանա,
որ ոչ-ոքի կա հանգիստ
առանց լիակատար արդարության:
Այսօր
մենք ժամադրվել ենք
իրավունքի հետ
և ուզում ենք
արևին նայել ուղղահայաց,
թեկուզ
լույսի ներդաշնակությունը որոնելով
մե՛նք այրվենք,
թեկուզ
չկարողանանք միանգամից
երկինքը չափել:
Այսօր
փոթորիկները զսպված՝
արձակվում են,
ու Ցեղին Ձայնը
պոռթկում է—
ուզեն թե չուզեն թշնամիները:

Մենք պահանջք ունենք լսելու
ղողանջները հոգու:
Թող զանգակները չդադարեն հնչելուց
ու սփռեն մեր ճիչը աշխարհում:
Թող ժողովրդիս ձայնը մաքուր
արձագանքե անջրպետում,
ու ճառագայթները մի նոր արևի
հայտարարեն անվախ.
թողե՛ք ազատ ապրի մարդը.
թողե՛ք ազատ ապրի հայը:

# ՊԱՅՔԱՐ ՊԱՅՔԱՐ ՄԻՆՉԵՎ ՎԵՐՋ



Լուսանկարները՝ ԱՐՄԵՆ ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆԻ

Այն, ինչ այսօր կատարվում է Հայաստանի երեխաների հոգիներում, երևի թե չի վիճակվել ոչ մի ազգի փոքրերին: Եվ դրա համար էլ ես օրեցօր ավելի ու ավելի շատ եմ սիրում հայ երեխաներին, սիրում եմ նրանց խոր աչքերի համար, խելացի հայացքի, սիրում եմ նրանց հպարտության համար ու ամոթխածության, սիրում եմ նրանց երազանքի համար ու այսօր նաև՝ պայքարի, երեխայի համար անբնական ու դաժան ճակատագրի, որ փոխանակ խաղալու ու զվարճանալու՝ նրանց դեմքերին ավելի ու ավելի է ընդգծվում հասուն խոհը: Եվ տխրում եմ նրանց համար, տխրում նրանց վաղահաս հասունության համար, տխրում նրանցից զավթված բակերի ու մանկության համար և վերջապես այն բանի, որ այսօր ես ստիպված եմ եղել նման հարցեր տալ նրանց, որ այդ հարցերը նրանք բնական են ընդունել, դեռ ավելին՝ շատ դեպքերում ճշգրտորեն պատասխանել:

Երբևիցե ձեզ պատասխան կտան, սիրելի երեխաներ, պատասխան կըտան նրանք, ովքեր կրճատեցին ձեր մանկությունը, որ ամենահիասքանչ շրջանն է մարդու կյանքի, ովքեր այնպես արեցին, որ մանկական անհոգությունը վտարվի ձեր հոգուց և տեղը գրավի ծանր խոհը հայրենիքի ճակատագրի մասին ու քաղաքական պայքարի:

Այն, ինչ այսօր կատարվում է Հայաստանի մանկանց հոգիներում, թող երբևէ չվիճակվի մյուս ազգերի ոչ մեծահասակներին և ոչ էլ առավել ևս՝ երեխաներին:

Ընդհանրապես մեր երկրում մանուկներին վաղուց են ներքաշել քաղաքականության մեջ: Մանուկ լինելուց բացի՝ նրանք անպայման նախ պետք է հոկտեմբերիկ լինեն՝ մանուկ լենինյան, հետո՝ պիոներ՝ պատանի լենինյան, հետո կոմերիտական՝ երիտասարդ լենինյան, որպեսզի հետո լինեն նաև կոմունիստ՝ լենինյան՝ առանց ոչ մի բանի:

Հարցեր, հարցեր, հարցեր, որոնք այսօր առավել ծանր են կշռում հատկապես հայ երեխաների հոգիներում, որովհետև նրանց գենը տեսել է 1915 թ. եղեռնը, իսկ աչքը՝ այսօր արդեն Սումգայիթի եղեռնը, որովհետև նրանց մարմինները չարչարվեցին փըլատակների տակ՝ զարհուր կասկածներում, որ իրենց քաղաքները նոր Հերոսիմա ու Նագասակի են, իսկ սրտերը զգացին հեռու երկրներում ապրող մարդկանց բարեկամության ջերմությունը, թեև անմիջապես նրանց մեջքին փչեց դաժանության սառնամանիքը:

Հարցեր, որ մի այլ դեպքում պիտի թաքցնեինք փոքրերից, հարցեր, որ տառապանք են մեծերիս հոգիների համար և ինչ արհավիրք ու նոր մի աղետ պետք է լինեին երեխաների հա-






մար: Բայց ազգին վերաբերող ոչ մի հարց մենք իրավունք չունենք թաքցնելու նրանցից, որովհետև պետք է հասուն լինի նրանց վաղվա երիտասարդությունը:

Մեր հանրապետության լավագույն թերթերից մեկին՝ «Պիոներ կանչին» կից գործում է «Ծավիղ» մանկապատանեկան խմբագրությունը, որի անդամների հետ զրուցելուց հետո ես ուրախությամբ տեսա, թե նաև որքան տոկուն ու արիասիրտ են այսօրվա հայ երեխաները:

Սիրելի էր հանդիպել ու զրուցել նրանց հետ, քանի որ ինքս էլ շավիղցի եմ եղել: Ներկայացնում եմ մեր հարցուպատասխանը, նաև իմ փոքրիկ խորհրդածությունները շավիղցիների պատասխանների վերաբերյալ, այն, ինչը տվյալ պահին ծնվել է մտքումս, սակայն չուզենալով ընդհատել նրանց խոսքը, աշխատել եմ մտապահել ու փակագծերում ներկայացնել ընթերցողին:

**ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ**

— Քանի որ այսօրվա մեր զրույցը քաղաքական բովանդակություն ունի և քանի որ հաճախ ենք լսում, թե մենք՝ հայերս լավ դիվանագետներ չենք ունեցել ու միշտ մեր վարած քաղաքականությունը երկայրի ծայրահեղացրել ենք Վարդան-Վասակ «բանաձևով», ուստի՝ կցանկանայի իմանալ, կա՞ն ձեր մեջ այնպիսիները, որոնք որոշել են դիվանագետ, միջազգայնագետ դառնալ: Չէ՞ որ, իրոք, մենք այսօր լավ դիվանագիտության կարիք ենք զգում և, կարծում եմ, միշտ էլ զգալու ենք:

ՍԱՀԱԿԱՆՈՒՇ ԱՐՈՅԱՆ (Հոկտեմբերյանի շրջան, Խանջյանի անվան սովխոզ, միջն. դպրոց, 11-րդ դաս.)— Զարգացած դիվանագիտությունը միայն այն դեպքում դեր ունի ազգերի, հատկապես պետությունների հարաբերությունների զարգացման մեջ, երբ քաղաքական իրադարձությունները ճիշտ են գնահատվում այդ իրադարձություններին անմիջական մասնակցություն ունեցող պետություններից կողմից: Իսկ եթե այն խեղաթյուրվում է, ինչպես այսօր արցախյան շարժումը ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նստաշրջանում, ապա այստեղ կարող է հաղթել բադիրով-ալիև-վեզիրովյան դիվանագիտությունը:

Հայերս դիվանագիտության մեջ չենք ունեցել հաջողություններ՝ սկսած Արշակունիների թագավորությունից, երբ մեր հայրենիքը կեղեքվում էր պարսկական ու բյուզանդական նվաճողների կողմից, մինչև մեր օրերը: Բայց ասել, որ մեր տառապած ու տառապող ժողովրդի գլխին եկող արհավիրքների պատճառը դիվանագետ ազգ չլինելն է, ճիշտ չի լինի, քանի որ մենք միամտորեն ՀԱՎԱՏԱՑԵԼ ենք բոլոր նրանց, ովքեր մեզ բարեկամություն են խոստացել, ժպտացել են ու թերևս այդ ժպիտով թույն են կաթեցրել մեր դիվանագետներին տրվող քաղաքական հեղուկով լցված բաժակի մեջ, ինչպես 1878 թ.-ին Բեռլինում, երբ Խրիմյան Հայրիկի խոսքերով՝ մեր շերեփը

# ՊԱՅՔԱՐ ՊԱՅՔԱՐ ՄԻՆՉԵՎ ՎԵՐՋ

թղթից դուրս եկավ և այդ պատճառով մենք չկարողացանք լիքը պղնձի միջից հանել մեր բաժին հարիսան:

ԱՐԹՈՒՐ ԼԱՎՉՅԱՆ (№ 14 ԳՊՏՈՒ).— Մենք քիչ թվով քաղաքականագետներ ենք ունեցել, բայց լավ քաղաքականագետներ ունեցել ենք: Նրանք չեն կեղծել նյութերը: Ինձ դուր է գալիս քաղաքական մեկնաբան Հակոբ Հակոբյանը, որը և՛ Մարդ է, և՛ քաղաքականագետ: Իհարկե, բոլորն էլ կարդացել են նրա հոդվածները, լսել են ելույթները հեռուստատեսությամբ, շատերն էլ տեսել են Ազատության հրապարակում:

Դիվանագետ դառնալու մասին եմ մըտածել, թեև կարծում եմ, որ ամեն հայ, ինչ մասնագիտություն էլ ունենա, մի քիչ քաղաքականագետ պետք է լինի:

ԱՐՏԱՇԵՍ ՍԱՐԳՍՅԱՆ (Երևան, №59 միջն. դպրոց, 11-րդ դաս.).— Իհարկե, մեր պատմության ընթացքում շատ են եղել ծայրահեղություններ, բայց և շատ են եղել դիվանագիտական քայլեր: Հայ ժողովուրդը բազմիցս խուսափել է պատերազմներից իր վարած քաղաքականության շնորհիվ: Առանց դիվանագիտության 3000 տարի հայ ժողովուրդը չէր ապատնի հզոր պետությունների կողքին: Հայ խոշոր դիվանագետներ Տիգրան Մեծը, Իսրայել Օրին, Հովսեփ Էմինը և ուրիշներ բազմիցս կարողացել են Հայաստանը դուրս բերել անելանելի դրությունից և պաշտպանել նրա շահերը:

ԱՐԹՈՒՐ ԵՐԻՑՅԱՆ (Երևան, Վ. Տերյանի անվ. № 60 միջն. դպրոց, 9-րդ դաս.).— Ես ցանկանում եմ քաղաքականագետ դառնալ, արդար քաղաքականագետ, քանի որ կան այնպիսիները, որ միայն անունով ու պաշտոնով են քաղաքականագետներ, իսկ իրականում... Ընդհանրապես դիվանագետ-միջազգայնագետները պետք է զարգացած մարդիկ լինեն, դավանեն ոչ թե բռնակալություն ու լճացում (ինչպես շատերը ստալինյան ու բրեժնևյան շրջանում), այլ արդարություն: Իսկ ամենակարևորն այս գործում ճշտապահությունն է:

ԱՐՄԵՆ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ (Երևան, № 51 միջն. դպրոց, 10-րդ դաս.).— Ես դեռ փոքրուց ցանկացել եմ ժուռնալիստ դառնալ: Չգիտեմ՝ այս մասնագիտությունը որքանով է կապված դիվանագիտության հետ, բայց իմ կարծիքով՝ ժուռնալիստը դիվանագետ-միջազգայնագետին բնորոշ մի շարք հատկանիշներ պետք է ունենա: Ինձ շատ է հետաքրքրում այդ մասնագիտությունը: Շատերը պնդում են, թե հայերս դիվանագետներ չենք ունեցել: Ճիշտ է, ես էլ եմ դրա հետ համաձայն, բայց համամիտ չեմ այն բանի հետ, թե հայերը միշտ իրենց քաղաքականությունը ծայրահեղացրել են Վարդան—Վասակ երկբևեռմամբ: Հայ դիվանագետը պետք է աչքի ընկնի իր ճկունությամբ, այսինքն՝ յուրաքանչյուր պահի կարողանա կողմնորոշվել, պահել իր հավասարակշռությունը, տարբեր հոսանքների ազդեցությամբ չկորցնել այն, իմանալ լեզուներ...

ԱՐՄԱՆ ԲԱԲԱՋԱՆՅԱՆ (Երևան, № 65 միջն. դպրոց, 8-րդ դաս.).— Այսօր մեզ համար անչափ կարևոր է բարձր աստիճանի դիվանագիտություն ունենալ: Մեր դիվանագետները չպետք է վախենան, թե վաղն իրենց ինչ է սպասվում, հայ ժողովուրդը նրանց մեջքին է կանգնած:

ՆԱԶԻԿ ԿԱՐԱԽԱՆՅԱՆ (Երևան № 172 դպրոց, 8-րդ դաս.).— Դիվանագետ դառնալ եմ երազել, բայց լինի ուսուցիչ, լինի բժիշկ կամ հոգեբան, անպայման մի քիչ էլ դիվանագետ պետք է լինի:

Թ. Տ. (Գիտե՞ք, երեխաներ, ինձ միշտ թվացել է, որ դիվանագիտությունը չի կարող մշտապես ազնիվ հիմքերի վրա լինել, որովհետև այն երկկողմ, հաճախ էլ՝ բազմակողմ հարաբերություն է, և, բնականաբար, այդ կողմերից մեկնումեկն արդար է իր պայքարում, մյուսը՝ անարդար: Ճիշտ է, անչափ դժվար է դիվանագիտական հարաբերություններում պահպանել բարոյական մաքրությունը, բայց այլ կերպ էլ, որքան ժամանակն առաջանում է, հնարավոր չէ, որովհետև աշխարհի աչքերը բացվել են արդեն: Ինչևիցե, խորհելու տեղիք է տալիս այն, թե ա՞րդյոք համայն մարդկության համար շո՞ւտ կգա բարոյական դիվանագիտության դարը, թե՞ դեռ երկար այս կամ այն

ցեղն ու պետությունը փակուղի կտանի քաղաքակրթության ջանքերը... Մեր ժողովրդի ակտիվ պայքարն այս ասպարեզում շարունակվում է: Ի՞նչ կտա մեզ մեր այժմյան դիվանագիտությունը, որն այս օրերին իրականացնում են հայ դեպուտատները ԽՍՀՄ Գերագույն խորհրդի 2-րդ նստաշրջանում: Այսօր նոյեմբերի 2-ն է, և դեռևս կոնկրետ ոչինչ չգիտենք: Ուստի՝ ուզում եմ տալ իմ երկրորդ հարցը):— Ի՞նչ է մեզ մնում անելու, եթե ԽՍՀՄ Գերագույն խորհրդի 2-րդ նստաշրջանը ևս արմատապես չվճռի Արցախի և արցախահայության ճակատագիրը: Հավատո՞ւմ եք, որ նստաշրջանը կլուծի այս պրոբլեմը:

**ՆԱԶԻԿ ԿԱՐԱԽԱՆՅԱՆ.**— Ինչ է մնո՞ւմ՝ պայքա՛ր, պայքա՛ր մինչև վերջ: Չեմ կարծում, որ նստաշրջանը կոնկրետ կերպով որոշի արցախահայության հարցը, պայքարել է հարկավոր ո՛չ խոսքով, ո՛չ երգով: Շատ, շա՛տ հողեր ենք զիջել, իսկ հիմա հերթն է, որ ուժով թե օրենքով ետ խլենք մեր կորցրածը:

**ՍԱՀԱԿԱՆՈՒՇ ԱՐՈՅԱՆ.**— Երկու տարի է, որ արցախյան հարցը միջազգային ասպարեզի վրա է, բայց մինչև հիմա քաղաքական լուծում չի ստացել: Լըսում ենք «վերևներում», և, ի պատասխան դրա՝ «հարևանները» ավելի սանձարձակորեն են գործում: Հայ ժողովրդի համար այս օրհասական ժամին նրան երեք ամիս շրջափակման մեջ պահել, իսկ հետո ցինիկորեն հայտարարել, թե դա շըրջափակում չէ, այլ ուղղակի, «մեր ապրանքը չենք թողնում գնա Հայաստան...»: Տեսնում են «վերևներում», բայց լռում են: Այսօր Մոսկվայում շարունակվում է Գերագույն խորհրդի նստաշրջանը: Հայ ժողովուրդը հույսով հետևում է նրա աշխատանքներին, բայց՝ իզուր: Ղարաբաղի հարցը երկրորդական է դարձել, ինչ փույթ, որ մի ամբողջ ժողովուրդ զայրանում է հեռուստացույցի առջև: Պարզվում է՝ էլ ավելի կարևոր հարց կա՝ կոոպերատիվները...

**ԱՐԹՈՒՐ ԵՐԻՑՅԱՆ.**— Նստաշրջանը Արցախի հարցը կա՛մ չի ուզում լսել, կա՛մ չլսելու է տալիս, կա՛մ էլ անհիմն որոշումներ է ընդունում ԼՂԻՄ-ի վերաբերյալ: Մենք ինքներս պետք է գործենք, բայց ինքներս գործելով՝ ոչնչի չենք հասնի, քանի որ շատ քիչ իրավունքներ են տըրված խորհրդային հանրապետությանը: Մենք պետք է դիմենք արտասահմանյան կ ա զ մ ա կ ե ր պ ու թյուններին՝ ՄԱԿ, ՅՈՒՆԵՍԿՕ, որոնք գուցե նպաստեն Հայոց հարցի մի մասի՝ արցախյան պրոբլեմի լուծմանը:

**ԱՐՄԵՆ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ.**—Այո, մեր ժողովրդի ակտիվ պայքարը շարունակվում է: Մեզ այս ծանր օրերին նախ պետք է միասնություն: Միայն միասնության շընորհիվ մենք կկարողանանք որոշակի արդյունքի հասնել: Ո՞վ է տեսել, որ այս պայմաններում, երբ Խորհրդային Միությունն ինքն է խաղաղություն քարոզում, իր ներսում շրջափակում կատարվի:

Ի՞նչ բարեկամության մասին կարող է խոսք լինել, երբ նման ոճրագործ միջոցների է դիմում ադրբեջանական կողմը: Կենտրոնական կառավարությունը չի ուզում լսել արցախահայության ձայնը: Մենք այսպես չենք կարող հարց լուծել: Մեր ժողովրդին հարկավոր է դուրս գալ խորհրդային ֆեդերացիայի կազմից: Այն դեպքում նոր Հայաստանը կկարողանա ինքը վճռել իր հարցերը:

**ԱՐՄԱՆ ԲԱԲԱՋԱՆՅԱՆ.**— Մեր ժողովուրդը չի դադարելու պայքարելուց: Այսօր, երբ դիտում ենք նստաշրջանը, որըն իբր պիտի լուծի արցախյան հարցը, ինչ-որ չի երևում, որ երկրում հռչակված է դեմոկրատիա: Գորբաչովը կամ Լուկյանովը դահլիճում նստած մտածում են՝ ում խոսք տալ, ում՝ չտալ: Արցախյան հարցը պիտի լուծվի պատերազմով, և ես չեմ վախենում, պիտի գնամ, կռվեմ: Պատերազմ հենց ղեկավարն է ուզում,եթե չուզենար, արցախյան հարցը այսքան չէր ձգձգի: Ես կարծում եմ, որ ԽՍՀՄ-ի կազմում արցախյան հարցը խաղաղ ճանապարհով չենք կարող լուծել:

**ԼԻԼԻԹ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ** (Երևան, №174 միջն. դպր., 11-րդ դաս.).— Եթե ԽՍՀՄ Գերագույն խորհրդի երկրորդ նստաշըրջանը խուսափի արմատապես վճռել Արցախի հարցը, պարզ կդառնա, որ այն սահմանադրական եղանակով չի լուծվի: Ընկճվե՞լ և, ինչպես ԽՍՀՄ առաջին դեմքն է խորհուրդ տալիս, եղբայրաբար ապրե՞լ հարևան հանրապետության հետ, հրաժարվե՞լ Արցախից, վարել «նորմալ», «հանգիստ» կյա՞նք: Մեկուկես տարվա մեր պայքարից հետո նահանջել չի կարելի: Եվ եթե մեր Նպատակին չենք կարող հասնել սահմանադրական ճանապարհով, ապա պետք է դիմենք պարտի-





զանական պայքարի: Բլոկադային նստաշրջանը քաղաքական գնահատական չտվեց, ուրեմն՝ չի բացառվում, որ այն կկրկնվի: ԲԼՈԿԱԴԱՆ ՄԵՐ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՊԱՐԵՏԱՅԻՆ ԺԱՄՆ Է:

ԱՐՏԱՇԵՍ ՍԱՐԳՍՅԱՆ.— Արցախի ժողովուրդը պահանջում է միացում, շատ հանձնաժողովներ են կազմվել, որոշումներ ընդունվել, բայց դրանք դեռ ոչ մի օգուտ չեն տալիս: Եթե նստաշրջանը դարձյալ խուսափի արմատապես վճռելու Արցախի հարցը, ապա այն պետք է լուծել ՄԱԿ-ի միջոցով:

ԱՐԹՈՒՐ ԼԱՎՉՅԱՆ.— Ես չեմ կարծում, որ անելիքներ չունենք, բայց նաև չեմ հավատում, որ Գերագույն խորհրդի նստաշրջանը որոշում կհրապարակի հօգուտ մեզ: Նստաշրջանը չի ուզում քաղաքական գնահատական տալ շրջափակմանը, և ես սկսեցի մտածել, որ, իրոք, չեն ցանկանում լուծել մեր և արցախահայության հարցը:

Թ. Տ. — (Երբեք Խորհրդային Միության երեխաներն այսքան թերահավատ չեն եղել իրենց երկրի, կառավարության, իշխանության նկատմամբ, երբե՛ք: Նույնիսկ ստալինյան բռնակալության տարիներին նրանք հավատացել են իրենց մեծ հայրենիքի պայծառ ապագային: Իսկ հիմա նույնիսկ հայտնում են այն միտքը, որ խորհրդային ֆեդերացիան առաջադիմության, ազգերի զարգացման արգելք է: Ի միջի այլոց, հաջորդ հարցի մեջ անդրադառնալու եմ ֆեդերացիայի գաղափարին: Արման, ես հավատում եմ, որ դու Արցախի համար պատերազմ էլ կմեկնես: Ինչ լավ է, որ դու չես կարող պատկերացնել, թե ինչ է պատերազմը, կռիվ կինոներով սերունդ կրթելու երևի միակ և վերջին օգուտն է դա:

Լիլիթ, ինչ երկակի տրամաբանություն ունես, երբ ասում ես՝ բլոկադային նստաշրջանը քաղաքական գնահատական չտվեց, ուրեմն՝ չի բացառվում, որ այն կկրկնվի, ինչ դիպուկ ես ասում՝ բլոկադան մեր տնտեսական պարետային ժամն է: Ասում ես պարտիզանական պայքա՞ր: Ցավալին այն է, որ ես չեմ կարող առարկել ո՛չ քեզ, ո՛չ Արմանին, որ մի քանի ամիս է, ինչ ռուսական դըպրոցից հայկական է տեղափոխվել: Չեմ կարող, որովհետև պայքարի մնացած բոլոր միջոցները այսօր «վերևներում» փակուղի են մտցվում: Սահմանադրություն, երկրի գլխավոր օրենք, օրինական երկիր, իրավական երկիր: Եթե իրար դեմ են նույն երկրի օրենքները, ուրեմն՝ այդ երկիրը դեռ կառավարվում է բռնակալական ձևով, ինչպես արդեն քանի տասնամյակ հեղափոխությունից հետո: Ի դեպ, ձեր պատասխաններում դժգոհում եք նաև երկրի պրեզիդենտից: Այդ մասին էլ եմ ես ուզում ձեզ հարց տալ:

Մեզ ասում են՝ սպասեք, մի քիչ էլ ըսպասեք, բայց արդեն որքան ենք զայրանում այդ խոսքը լսելիս, ինչքա՞ն կարելի է: Մենք խաղաղասեր ժողովուրդ ենք և նաև համբերատար, բայց երբ թըքում են հոգուդ մեջ, էլ ինչպե՞ս զսպել կրքերը, էլ ինչպե՞ս սառը դատել, մինչև ե՞րբ, հո համակարգիչ մեքենա չե՞նք ազգովին: Ավելի լավ է՝ փոխանակ մենք Ար-






մենի ու Լիլիթի խոսքերը մեղմենք ու հարթեցնենք, թող «վերևներում» մտածեն, թե այս ինչպե՞ս եղավ, այս ի՞նչ հոգևոր աղետ է տեղի ունենում, որ դպրոցական երեխայի շուրթերից կռվի կոչ է լսվում։ Հավատում եմ, որ Հայրենական մեծ պատերազմի տարիներին շատ դպրոցականներ են ցանկացել կռվել։ Բայց այն ժամանակ թշնամին ֆաշիզմն էր, իսկ հիմա՞ ով, ի՞նչը։ Ախ, հա՛, հավաքած, մեկ ընդհանուր կաթսայի մեջ լցված, անաղ, անհամ եփվող «ժողովուրդների բարեկամությունն» ու «ինտերնացիոնալիզմը», որոնց երբեք չենք հասնի, եթե մի օր բոլոր ժողովուրդներին մեկ առ մեկ չկանգնենք ու բացեիբաց ասենք՝ գիտե՞ք պատմական ճշմարտությունն այս է, դուք այս եք եղել, ձեր հարևանը՝ այս, ձեր պատմաբանները ձեզ, այ, այս հարցում են խաբել, սուտ են ներարկել ձեր ու ձեր սերունդների մեջ, ուրեմն՝ նրանք են ձեր թշնամիները և ոչ թե հարևան ժողովուրդը, որի հետ նույն պետության, ֆեդերացիայի մեջ եք ապրում)։— Արդյոք մի՞շտ է ֆեդերացիան անհրաժեշտություն։ Ի՞նչ եք կարծում, մեր ժողովրդին այսօր ի՞նչն է ձեռնտու. լինել խորհրդային ֆեդերացիայի մեջ, թե՞ առանձին։

**ՍԱՀԱԿԱՆՈՒՇ ԱՐՈՅԱՆ.**— Ֆեդերացիան անհրաժեշտություն չէ, չնայած որ եթե ապահովվի նրա ճիշտ գործունեությունը, ապա այն կարող է լինել ամուր և անխորտակ։ Սակայն կեղծ, լոզունգային խաղերով պահել ֆեդերացիա՝ նշանակում է ոչ թե հզորացնել այն, այլ խորտակել։ Հայաստանը Միության անդամներից մեկն է, բայց ինչպե՞ս հասկանանք, որ միասնական ընտանիքում մեկը կարող է ճնշել ու շահագործել մյուսին, խոսել բարեկամության ու եղբայրության մասին, բայց սպանել բարեկամին ու եղբորը։ ԵԹԵ ՖԵԴԵՐԱՑԻԱՆ ՊԵՏՔ Է ԱՅԴՊԻՍԻՆ ԼԻՆԻ, նրա կազմում մնալն ազգային սխալ է։

Արցախի հարցը կլուծվի ազնիվ մարդկանց միջոցով...

**ԼԻԼԻԹ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ.**— Արդեն վաղուց ժամանակն է, որ ամեն ժողովուրդ ինքը տնօրինի իր բախտը։ ԽՍՀՄ սահմանադրության մեջ կա կետ հանրապետությունների սուվերենության մասին, սակայն երբ մերձբալթյան հանրապետությունները օրենք ընդունեցին ուզած ժամանակ դուրս գալ ԽՍՀՄ կազմից, կենտրոնը շատ խիստ քննադատեց նրանց այդ քայլը։

(Լիլիթ, լրացնեմ. փոխարենը՝ համենայնդեպս մինչև այսօր լռության մատնեց Ադրբեջանի նմանատիպ որոշումը.-Թ. Տ.)։ Կարծում եմ, որ մեզ հիմա ավելի ձեռնտու է ստեղծել անկախ Հայաստան, և Արցախի հարցը պարզել «եղբայրական» Ադրբեջանի հետ։

**ԱՐՏԱՇԵՍ ՍԱՐԳՍՅԱՆ.**— Հեղափոխությունից հետո կազմվեց ֆեդերատիվ պետություն, որի մեջ մտնող բոլոր հանրապետությունները պետք է ունենային հավասար իրավունքներ։ Սակայն, ինչպես փորձն է ցույց տալիս, այդպես չէ։ Մենք պետք է փորձենք հաստատել իրավահավասարությունը հանրապետությունների, ԽՍՀՄ բոլոր ժողովուրդների

# ՊԱՅՔԱՐ ՊԱՅՔԱՐ ՄԻՆՉԵՎ ՎԵՐՋ

միջև: Հայաստանը պետք է առայժմ մնա ԽՍՀՄ կազմում: Իմ կարծիքով՝ Արցախի հարցը մենք կարող ենք լուծել միայն ԽՍՀՄ կազմում լինելով:

ՆԱԶԻԿ ԿԱՐԱԽԱՆՅԱՆ.— Առաջնահերթ խնդիր պետք է համարել խորհրդային ֆեդերացիայից անջատվելը, և վերջապես ամոթ է, 70 տարում մեր հանրապետությունը 7 անգամ իր ուղեղով չի գործել: Այդպես ավելի հեշտ կլուծվի Արցախի հարցը, որը, 70 տարի վիրավոր, գեթ մեկ անգամ վերքերը բժշկին ցույց տվողի պես, որոշել է տնքացող հարցերը դնել վերակառուցման դատին:

ԱՐԹՈՒՐ ԵՐԻՑՅԱՆ.— Չի կարելի ասել, որ ֆեդերացիան միշտ անհրաժեշտություն է, բայց չի կարելի նաև պնդել, թե երբեք անհրաժեշտություն չէ: Մենք չենք կարող ասել, որ արցախյան հարցը իր արդարացի լուծումը կստանա ֆեդերացիայից դուրս, քանի որ այդ ժամանակ բոլոր հանրապետությունները առանձին կլինեն և դժվար կլինի Ադրբեջանից ետ ուզել Արցախը: Հարցը կկանգնի անդունդի եզրին, քանի որ եթե արդեն երկու տարի է՝ հարցը լուծում չի ստանում ֆեդերացիայի մեջ, ուրեմն՝ պարզ է, որ լուծում չի ստանա ֆեդերացիայից դուրս:

ԱՐԹՈՒՐ ԼԱՎՉՅԱՆ.— Ինքնորոշումը լավ պտուղ է, բայց չեն թույլատրում լավ պտուղից օգտվել: Մոսկվան մեզ ստիպելով ասում է՝ դուք պետք է լինեք իմ կազմում, ես ձեզ ցանկանում եմ պահել: Բայց Մոսկվան չի հասկանում, որ մենք շնորհակալ ենք իրենից և ուզում ենք ինքնորոշվել: Եթե մենք լինենք անկախ պետություն, կկարողանանք մեր հարցը ներկայացնել ՄԱԿ:

Թ. Տ. .— Ի՞նչ եք կարծում, անձնական համակրանքը արդյոք նշանակություն ունի՞ քաղաքական պայքարում: Ձեզ ի՞նչ է թվում, արցախահայությա՞նը, թե՞ ադրբեջանական կողմին են համակրում Գերագույն խորհրդի նախագահը, նրա տեղակալը: Արդյո՞ք նրանց համակրանքը վճռորոշ է լինելու Արցախի հարցի համար:

ԼԻԼԻԹ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ.— Անձնական համակրանքը մեծ նշանակություն ունի քաղաքական պայքարում: Մի՞թե չի երևում, որ ԽՍՀՄ Գերագույն խորհրդում համակրանք են տածում ադրբեջանական կողմի նկատմամբ: Հուսանք, որ արցախյան հարցի լուծման մեջ նրանց համակրանքը վճռորոշ չի լինի:

ԱՐՏԱՇԵՍ ՍԱՐԳՍՅԱՆ.— Իմ կարծիքով՝ քաղաքական լիդերների անձնական համակրանքը որոշ նշանակություն ունի քաղաքական պայքարում: Հավանաբար, Գերագույն խորհրդի նախագահը և նրա տեղակալները ադրբեջանական կողմին են համակրում: Այդ համակրանքը առայժմ վճռորոշ է:

ԱՐԹՈՒՐ ԵՐԻՑՅԱՆ.— Երկրի ղեկավարությունը ադրբեջանական կողմին է համակրում, քանի որ անպատիժ են մնում ինչպես Սումգայիթի մարդասպանները, այնպես էլ շրջափակման կազմակերպիչներն ու իրագործողները: Այս հանգամանքը կարող է վճռորոշ դեր խաղալ մի ողջ ազգի համար:

ՆԱԶԻԿ ԿԱՐԱԽԱՆՅԱՆ.—Գերագույն խորհրդի նախագահը մտածում է այնպես անել, որ չհաղթի և ոչ մի կողմը, էլ ի՞նչ կարելի է խոսել կամ մտածել, անկեղծ ասած՝ դրական ու արդարացի ոչինչ:

ԱՐՄԱՆ ԲԱԲԱՋԱՆՅԱՆ.— Ես կարծում եմ, որ համակրանքն ու ազգակցական կապերը մեծ դեր են խաղում այս երկրի քաղաքական կյանքում: Չեմ գտնում խոսք ասելու այս երկրում տիրող անարդարության մասին: Մի՞թե երկրի ղեկավարը այսպես պիտի վարվեր, առաջին հերթին նա պետք է կտրուկ ձևով լուծեր հարցը, նա չի պատկերացնում Հայաստանի ժողովրդի հոգեկան վիճակը, չի մտնում մեր դրության մեջ, այլ օրեցօր, ժամեժամ ձգձգում է հարցի լուծումը: Երբ հայ ժողովուրդը, օգտվելով հրապարակայնության ու դեմոկրատիայի հոչակումից, ոտքի ելավ, կազմակերպեցին Սումգայիթ: Ճիշտն ասած՝ ես գիտեմ, որ այս նստաշրջանի վրա հույս դնելով՝ Արցախը

երբեք չի վերամիավորվի Հայաստանին: Հիմա մեզ պետք է Արցախի բնակչության անվտանգության մասին մտածել, թե չէ պատերազմ կլինի, որը կխլի շատ հայերի կյանքը: Մեզ այժմ մեկ ուրիշ պրեզիդենտ է պետք: (Ուրախ եմ, սիրելի Արման, որ դու, քիչ առաջ հայտնելով այն կարծիքը, թե արցախյան հարցը պետք է լուծվի պատերազմով, այնուամենայնիվ կարծում ես, որ դրա ժամանակը դեռ չի հասել: Ես էլ երևի շտապել եմ եզրակացնել, թե դու չես պատկերացնում՝ ինչ է պատերազմը: Եվս մի բան. քո միտքը պրեզիդենտի առնչությամբ ինձ հիշեցրեց, որ ես դեռ մեկ հարց էլ ունեմ ձեզ տալու):

Թ. Տ.— Դուք ընտրական իրավունքներից չեք օգտվում, որովհետև առայժմ փոքր եք: Սակայն ինձ թվում է, որ տարիքային մոտեցումն ընտրական իրավունքին խիստ պայմանական է, քանի որ շատ չափահաս մարդիկ քաղաքականապես այնքան էլ հասուն չեն ընտրություններին մասնակցելու համար, իսկ ոչ քիչ թվով անչափահասներ այսօր քաղաքականապես այնքան են հասունացել, որ բարոյապես ճիշտ չէ նրանց զրկել ընտրողի իրավունքից: Ինչևիցե, դուք՝ փոքրերը, ինչպե՞ս եք վերաբերվում մեր՝ մեծերիս ընտրյալներին: Դուք գո՞հ եք մեր ընտրած պրեզիդենտից: Ինչպիսի՞ն կլինի ձեր պրեզիդենտը:

ՍԱՀԱԿԱՆՈՒՇ ԱՐՈՅԱՆ.— Իմ ընտրած պրեզիդենտը կլինի իր բարձրության վրա և գործի ընթացքին կնայի ոչ թե ուժի դիրքերից, այլ ճշմարտության, երկար ու բարակ ճառերի փոխարեն կկարողանա կոնկրետ գործերով բարելավել կյանքը, երկիրը դուրս կբերի սոցիալ-քաղաքական ճգնաժամից և ժամանակին կլուծի ազգային հարցերը:

ԼԻԼԻԹ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ.— Լավ կլիներ, որ ընտրելու իրավունք տրվեր նաև 14—16 տարեկաններին: Իզուր չէ ասված, որ փոքրերը մարդկանց ավելի շուտ են ճանաչում: Մենք գոհ չենք մեծերի ընտրած պրեզիդենտից, որը չի կարողանում երկիրը դուրս բերել տնտեսական, քաղաքական ճգնաժամից, լուծել ազգային հարցերը: Մեզ էլ ընտրելու իրավունք տվեք:

ԱԹՈՒՐ ԵՐԻՑՅԱՆ.— Երեխաները եթե ոչ ընտրվելու, ապա ընտրելու իրավունք պետք է ունենան:

ՍՎԵՏԼԱՆԱ ԳԵՎՈՐԳՅԱՆ (Երևան, № 73 միջն. դպր., 9-րդ դաս.).— Եթե ես լինեի Գորբաչովի փոխարեն, չէի թույլ տա սումգայիթյան ջարդը, զինվորականների հարձակումը անմեղ քաղաքացիների վրա «Զվարթնոց» օդանավակայանում, սումգայիթյան մարդասպանների խայտառակ դատավարությունը, «Ղարաբաղ» կոմիտեի անդամների ապօրինի ձերբակալումը, չէի հանդուրժի շրջափակումը և այլն...

ԱՐՄԱՆ ԲԱԲԱՋԱՆՅԱՆ.— Այո, անչափահասներիս, չգիտես ինչու, չի թույլատրվում ընտրել կամ էլ ընտրվել: Մի՞թե դեպուտատը գլխավորապես ապագան չի որոշելու, իսկ ապագան մենք ենք՝ երեխաներս:

ՆԱԶԻԿ ԿԱՐԱԽԱՆՅԱՆ.—Չունենալով ընտրական իրավունք, մեծ ուշադրությամբ ենք հետևում ձեր՝ մեծերիդ ընտրյալներին: Դեմ չենք, բայց կողմ էլ չենք: Դուք պետք է միշտ ընտրեք այնպես դեմոկրատորեն, ինչպես ընտրվեցին Ստարավոյտովան, Մանուչարյանը, Ստամբոլցյանը, բայց ընտրել եք նաև այնպիսիներին, որոնք դեռ շնչում են բրեժնևյան օդը:

Անձամբ ես գոհ չեմ ձեր ընտրած պրեզիդենտից: Նախ՝ ընտրելու ձևն էր անարդար, ներկայացված էր միայն մեկ թեկնածու, գոնե երկուսը լինեին:

Մենք՝ փոքրերս, պրեզիդենտ կընտրենք ավելի արդարացի, նա երկիրը սոցիալական, քաղաքական տնտեսական ու ազգային այս ծանր վիճակից դուրս կբերի խելացի ձևով, ոչ թե խառնելով, տակնուվրա անելով ճիշտն ու սուտը:

Թ. Տ.— (Ես մի քանի անգամ եղել եմ արտասահմանյան երկրներում և զգացել, որ յուրաքանչյուր քաղաքացի իր պարտքն է համարում նախևառաջ պաշտպանել իր պրեզիդենտին և հետո միայն քննադատել: Ճիշտ է, մեր հեռուստատեսությունը փոքրաթիվ օրինակներ մեզ ներկայացնելով՝ հաճախ ձգտում է հակառակ պատրանքն ստեղծել, հատկապես երբ խոսքը կապիտալիստական երկրի պրեզիդենտի մասին է: Ես ուրախանում եմ, երբ ամերիկացին գոհունակությամբ է խոսում իր պրեզիդենտի մասին և հիմա կուզենայի, որ դուք նույնպես, սիրելի երեխաներ, ունենայիք հնարավորությունը նախ պաշտպանելու և հետո միայն քննադատելու մեր պրեզիդենտին: Սակայն ես էլ եմ գիտակցում, որ այսօր հենց արցախյան հարցը պրեզիդենտական պաշտ-

պանության կարիք ունի, և ինքը պրեզիդենտն է այդ հարցը մեզ անծանոթ մշուշների մեջ պահում):— Եվ վերջին հարցը, ավելի ճիշտ՝ առաջարկություն։ Ի՞նչ կասեիք ժողովրդին, եթե ձեզ տրամադրվեր Ազատության հրապարակի հարթակն ու միկրաֆոնը։ Ինչպիսի՞ կոչ կհղեիք մեր ժողովրդին։ Կամ էլ՝ ի՞նչ հարց կուզենայիք, որ ձեզ տրվեր։

**ԱՐԹՈՒՐ ԼԱՎՉՅԱՆ.**— Նախ՝ ես չեմ ընդունում Ազատության հրապարակից հաճախ մեր ժողովրդին ուղղված կոչը՝ մահ կամ ազատություն։ Դա հնուց եկած կոչ է։ Ես կարծում եմ, որ այլևս նման կոչ չպետք է հնչի Ազատության հրապարակի հարթակից։ Եթե ինձ տրամադրվեր միկրաֆոնը, ես հայ ժողովրդին կհղեի մեր կոչը. «Պայքա՛ր, պայքա՛ր՝ մինչև վերջ»։

**ԱՐԹՈՒՐ ԵՐԻՑՅԱՆ.**— Ես կուզենայի, որ ինձ հարց տային՝ արդյոք պետության մեջ մե՞կ կուսակցություն պիտի լինի, թե՞ գործի բազմակուսակցության սկզբունքը։ Շատ անգամ ենք լսում, որ մեր սիստեմը սխալ է, որ մենք սխալ ենք ապրել մեր պետության ստեղծման օրից մինչև այսօր։ Պետք է ամբողջապես փոխել սիստեմը։

Եթե ինձ տրամադրվեին Ազատության հրապարակի հարթակն ու միկրաֆոնը, ժողովրդին կոչ կանեի թողնել միտինգներն ու ցույցերը և անցնել կոնկրետ գործերի։

**ՆԱԶԻԿ ԿԱՐԱԽԱՆՅԱՆ.**— Ես կուզենայի, որ ինձ հարց տային, թե ինչպիսին պետք է լինի Խորհրդային Հայաստանի Կենտկոմի առաջին քարտուղարը ու կըպատասխանեի՝ քաջասիրտ՝ հոգով հայ, ազգասեր, ամուր կանգնած հայոց հողին և ոչ հիսունն անց։

Եթե ինձ տրվեր Ազատության հրապարակի միկրաֆոնը, կոչ կանեի. «Անկախություն»։

**ԼԻԼԻԹ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ.**— Ազատության հարթակից ես ժողովրդին կոչ կանեի չնահանջել, գնալ միշտ առաջ, որովհետև կես ճանապարհից ետ դառնալը տղամարդկություն չէ և մեզ պատիվ չի բերում։

**ՍԱՀԱԿԱՆՈՒՇ ԱՐՈՅԱՆ.**— Եթե բարձրանայի Ազատության հրապարակի հարթակ, իմ ժողովրդին կհղեի Ավարայրի պատմիչ Եղիշեի խոսքերը՝ իմացյալ մահը անմահություն է, ոչ իմացյալ մահը՝ մահ։




**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՔԱՌԱՍՈՒՆՅՈԹԵՐՈՐԴ

# Մեծ Հայքի արևմտյան մասի կցումը Հռոմին

Փավստոս Բուզանդն իր «Հայոց պատմությունը» հասցրել է մինչև Մեծ Հայքի բաժանման թվականը։ Ի՞նչն է պատճառը։ Կամ այդ թվականից քիչ անց նա վախճանվել է, կամ այն կարծիքին է եղել, որ բաժան-բաժան եղած Հայաստանի պատմությունը չարժի գրել։ Նա Մեծ Հայքի բաժանման մասին գրելով՝ հիշեցնում է, որ Հռոմի կայսրը և Պարսկաստանի թագավորը իրար հետ այսպիսի խորհուրդ են արել. «Մեր երկուսի միջև ընկած է այս հզոր և հարուստ թագավորությունը. լավ կլիներ, որ այս միջոցով թուլացնենք ու խանգարենք այս թագավորությանը. նախ երկու մասի բաժանենք այս երկու Արշակունի թագավորներով, որոնց նշանակեցինք, հետո կաշխատենք նրանց էլ թուլացնել, աղքատացնել և մեր ծառայության ներքարկել, որպեսզի մեր մեջ չկարողանան գլուխ բարձրացնել»։

Այո՛, Հայաստանի հարևան երկու աշխարհակալ պետությունները այսպես էին մտածում։ Հետագայում թե՛ հարևանները, թե՛ աշխարհակալները փոխվեցին, բայց այս մտայնությունը մնաց։ Արարատյան

հայոց թագավորության ժամանակ հայերը մի աշխարհակալ հարևան ունեին հարավում՝ Ասորեստանը, և Հայքի գործը ավելի դյուրին էր: Հիշենք, որ մ. թ. ա. 9-րդ դարի կեսերից սկսած հայերը Ասորեստանի նկատմամբ մեծ մասամբ հաղթանակներ էին տանում և պահպանում Մեծ Հայքի հզորությունն ու անկախությունը: Տիգրան Մեծի ժամանակ արդեն աշխարհակալ երկու պետության արանքում էր Հայքը՝ Պարթևստանի և Հռոմի, բայց Տիգրանը երկար ժամանակ ուժ ունեցավ երկուսին էլ հաղթահարելու, ապա Արևմուտքի աշխարհակալը սկսեց սեղմել Մեծ Հայքը արևմուտքից: Եվ, այնուհետև, Հայքը երկու աշխարհակալների արանքում էր՝ արևելքից և արևմուտքից, ու երկար ժամանակ իբրև հզոր պետություն դիմացավ, շատ էլ հաղթանակներ տարավ: Եվ կշարունակեր դիմանալ, եթե հայոց ներքին ուժերը չօժանդակեին այդ երկու աշխարհակալ հարևաններին Մեծ Հայքը բաժանելու:

Մեր ժամանակների որոշ պատմաբաններ Հայաստանի թուլացումն ու բաժանումը, այնուհետև Արշակունյաց թագավորության անկումը բացատրում են ավատական (ֆեոդալական) կարգերի առաջացմամբ ու զարգացմամբ: Սա անիմաստ բացատրություն է: Չէ՞ որ դրանից առաջ շատ թագավորություններ ու պետություններ են վերացել, օրինակ՝ Ծոփերի, Աքքադի, Միտանիի, Արծավի, Խաթթիի, Բաբելոնի, Ասորեստանի, Մարաստանի և այլ պետություններ: Իսկ ավատական կարգերի հաստատմամբ էլ շատ հին թագավորություններ շարունակեցին իրենց գոյությունը, օրինակ՝ Պարսկաստանի, Հռոմի, Վրաստանի, Աղվանքի թագավորությունները և այլն: Ուրեմն, կարգերն այստեղ դեր չունեն: Հայկական պետության թուլացման ու վերացման պատճառները, երևի, երկուսն էին. նախ Հայաստանի աշխարհագրական դիրքը՝ երկու անկուշտ աշխարհակալների մեջտեղում գտնվելը. երկու կողմից դիմագրավելը չափազանց դժվար էր, հոգնեցնող ու մաշող, ապա՝ ամենակարևորը՝ հայ նախարարների մի մասի մեջ զարգացած պառակտողական, եսապաշտական հոգեբանությունը, որ ջլատեց երկիրը:

Բոլոր փաստերը խոսում են այն մասին, որ նախքան 387 թվականը Մեծ Հայքի պաշտոնական բաժանումն ըստ պայմանագրի, 385-ին իրական բաժանումը կատարված էր՝ հայ նախարարների, պարսից թագավորի և Հռոմի կայսրի ջանքերով:


Խոսրով III

Մեծ Հայքի երկու մասի բաժանվելուն զուգընթաց Հայաստանից դարձյալ պոկվեցին մի շարք երկրամասեր՝ Նորշիրականը, Գուգարքի և Ուտիքի հյուսիսային մասերը, Փայտակարանը, Աղձնիքը, Կորդուքը և այլն, շուրջ 100 հազար քառակուսի կիլոմետր: Ծոփքն ավելի վաղ կիսանկախ էր դարձել: Փավստոսն այսպես է գրում Մեծ Հայքի բաժան-բաժանի մասին. «Պարսից կողմի բաժինը մնաց Խոսրով թագավորին, իսկ հունաց կողմի բաժինը՝ Արշակ թագավորին: Բայց նրանցից էլ շատ գավառներ այս ու այնտեղ խուզվեցին, կտրվեցին, և երկուսի երկրներից մի փոքր մասը մնաց երկու թագավորներին... և այն ժամանակ ու այնուհետև Հայոց թագավորությունը բաժանվեց, ցրվեց, իր նախկին մեծությունից ընկավ»: Կարդալով այս՝ զգում ենք, որ Փավստոսը ներքնապես ողբացել է Հայաստանի թուլացման, վաղեմի ուժի կորստի առթիվ:

Փավստոսը գրում է, որ ինքը Բյուզանդիոնից էր: Նա հայ էր կամ լիովին հայացած: Նրա «Հայոց պատմությունը» շըն-

չում է հայկական ջերմ հայրենասիրությամբ: Իր մասին նա գրել է նաև, որ եղել է եպիսկոպոս, Ներսես Մեծի պալատում աշխատել է իբրև գործավար և ներքին խորհրդական: Նա գրել է նաև, որ ինքն ինչ-որ ժամանակ ապրել է նաև Հայաստանի բաժանումից հետո: Բայց այդ ժամանակ նա պետք է զառամյալ եղած լինի: Ինչևէ. Փավստոսը մեծ պատմիչ է, նրա գիրքը հայ ժողովրդի IV դարի պատմության անփոխարինելի, եզակի վկայությունների շտեմարան է՝ գրրված անաչառ, նաև հայկական տեսանկյունից: Շատ տարիներ Ներսես Մեծի հովանու տակ աշխատելը, նրա հետ ամենօրյա շփումը Փավստոսի մեջ հայ հայրենասիրության կրակ էր բորբոքել:

387 թվականից հետո մինչև 428 թվականը Հայաստանում տեղի ունեցած դեպքերի մասին պատմող գլխավոր և ամենավստահելի աղբյուրները Մովսես Խորենացու և Ղազար Փարպեցու «Հայոց պատմություն» գրքերն են: Այսուհետև հայոց պատմությունը շարունակելու ենք մեծ մասամբ ըստ Խորենացու և Փարպեցու, երբեմն միայն օտար աղբյուրների դիմելով:

Արշակ III-ի գահատեղին նախքան Մեծ Հայքի պաշտոնական բաժանումն էլ գտնվում էր Արևմտյան Հայաստանի Եկեղյաց գավառում, որը նրա տոհմական կալվածքն էր: Նա նստում էր այդ գավառի Չրմես ավանում: Նրա իշխանության տակ էին հիմնականում Բարձր Հայքի ու Փոքր Հայքի որոշ մասերը, մի քիչ էլ Ծոփքից՝ 50 հազար քառակուսի կիլոմետրից քիչ ավելի տարածքով:

Խոսրով թագավորի մայրաքաղաքը շարունակում էր մնալ Վաղարշապատը: Նրա իշխանության տակ էին Մեծ Հայքի արևելյան հատվածի գավառները՝ Այրարատ, Տուրուբերան (Տարոն), Մոկք, Վասպուրական, Տայք, Սյունիք, Արցախ, Գուգարքի և Ուտիքի հարավային հատվածները, մոտ 146 հազար քառակուսի կիլոմետր տարածքով: Երկու Հայաստանների բաժանող գիծն անցնում էր Կարինից քիչ արևելք ընկած վայրով՝ դեպի հարավ՝ Բյուրակնյա լեռներն ու ավելի հարավ՝ մինչև Մծբին:

Ինչպես տեսնում ենք, Մեծ Հայքի մոտ կեսը Խոսրով III-ի իշխանության տակ էր, շատ ավելի փոքր մասը՝ Արշակ III-ի:

Հայ նախարարների մի մասը թողնելով իրենց կալվածքները, տունուտեղը՝ Արշակի հետ փախել էին արևմուտք: Բայց նրանցից առավել հայրենասերները ըզգացին, որ Մեծ Հայքի արևելյան մասը ավելի իրավունք ունի բուն Հայաստան համարվելու՝ իր մեծ տարածքով, նախկին մայրաքաղաքով: Ուստի սկսեցին աստիճանաբար հավատարմություն հայտնել Խոսրովին ու վերադառնալ իրենց կալվածքները: Դրանցից էր Սահակ Բագրատունին, որը Խոսրով III-ից ստացավ հայոց սպարապետի պաշտոնը: Արշակին ամենից ավելի հավատարիմ էին հռոմեասեր նախարարները, օրինակ՝ Կամսարականներն ու Մամիկոնյանները:

Իհարկե, երբ ասում ենք, թե Մեծ Հայքի այսինչ մասն Արշակի, այնինչը Խոսրովի իշխանության տակ էր, դա ուղղակի չպիտի հասկանալ: Հայոց այս երկու թագավորների իշխանությունը սահմանափակվել էր. Արշակը ենթարկվում էր Հռոմի կայսրին, Խոսրովը՝ Պարսկաստանի թագավորին: Նրանց մեջ հակամարտություն կար և անգամ պատերազմ ծագեց:

Արշակ III-ն Արշակունիների գանձերը Անի ամրոցից տեղափոխում էր Ծոփք, երբ իր հայ նախարարները՝ Սուրեն Խորխոռունին, Վահան Առավեղյանը, Աշխադար Դիմաքսյանը խլում են այդ գանձերը, որ տանեն Խոսրով թագավորին՝ նրան հաճոյանալու համար: Սամվել Մամիկոնյանը հասնում է նրանց, ապա գալիս է Խոսրովի սպարապետ Սահակ Բագրատունին իր զորքով և գանձերը հասցընում Խոսրով թագավորին: Վերջինս գանձերի մի մասն ուղարկում է Շապուհ III-ին՝ սիրաշահելու համար:

Երկու հայ թագավորների միջև պատերազմ է սկսվում: Հաղթում է Խոսրովը: Արշակին հավատարիմ նախարարներից Գազավոն Կամսարականը փրկում է իր թագավորին, հասցնում նրան իր գահատեղին՝ Չրմես, բայց շուտով Արշակը ծանր հիվանդանում է և վախճանվում 391 թ. (ըստ այլ հաշվումների՝ 387-ին):

Կոստանդնուպոլսում որոշում են Հայաստանի արևմտյան մասում այլևս հայ թագավոր չճանաչել. այդ երկրամասը կցում են կայսրությանը որպես նրա մասը, և այնտեղ ղեկավարում էին կայսրի նշանակած ռազմա-վարչական կառավարիչները, որոնք կոչվում էին կոմես:

(շարունակելի)



# Վահան Թեքեյան

## Եկեղեցին հայկական

Եկեղեցին հայկական
Ծննդավայրն է հոգւոյս,
Ինչպես քարայր մ'ընդարձակ,
Պարզ ու խորունկ, մութ ու լոյս:

Իր գաւիթով հիւրընկալ,
Իր լայն բեմով, ու հեռուն
Կանգնած իր լուռ խորանով,
Որ կարծես նաւ մ'է ծփուն:

Եկեղեցին հայկական
Մեծ վարագոյր մ'է բանուած,
Որուն ետեւ սկիհին մէջ
Կ'իջնէ ի՛նքը Աստուած:

Որուն առջեւ գլխահատ
Կուգայ իմ ազգս ամբողջ՝
Հաղորդուելու անցեալին
Հաց ու գինիով կենսառողջ:

Եկեղեցին հայկական
Բարձր բերդն է հաւատքին
Իմ պապերուս, որ հողէն
Զայն քար առ քար հանեցին:

Ու երկինքէն իջուցին
Զայն ձող առ ձող, ամպ առ ամպ,
Ու թաղուեցան անոր մէջ
Հանդարտութեամբ, հեզութեամբ:

Եկեղեցին հայկական
Ծովուն դիմաց ալեկոծ
Նաւահանգիստ մ'է խաղաղ,
Ցուրտ գիշերին հուր ու բոց:

Ու տոթակէզ ցերեկին
Անտառ մըն է ստուերոտ,
Ուր շուշաններ կը ծաղկին
Ծարականի գետին մօտ:

Եկեղեցին հայկական
Մէն մի յարին տակ գետնի
Դէպի երկինք բարձրացող
Գաղտնի ճամբայ մը ունի:

Եկեղեցին հայկական
Հայ հոգիին եւ մարմնոյն
Ջրահանդերձն է փայլուն,
Մինչ իր խաչերն են դաշոյն:

Եւ զանգակներն են հնչիւն,
Եւ երգն է մի՛շտ յաղթութիւն:

Բանաստեղծությունը Խորհրդային Հայաստանում լույս է տեսնում առաջին անգամ

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

# ՀՈՎԻԿԸ ԵՎ ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ՓԱՅՏԻԿԸ

Դուք ճանաչո՞ւմ եք Հովիկին: Չգիտե՞ք: Նա մեր բակում է ապրում, հենց մեր տան դիմաց: Մեր բակում նրան մեծից փոքր գիտեն: Էլ ինչպե՞ս չիմանան, երբ նա իր չարություններով զարմացրել է բոլորին: Որտեղ կռիվ, ծեծկռտոց կա՝ Հովիկն այնտեղ է, որտեղ ինչ-որ մեկին նեղացնում են՝ Հովիկն այնտեղ է, ամեն տեղ, որտեղ ամեն ինչ խառնված է, որտեղ ոչ-ոք իրար չի հասկանում՝ Հովիկն այնտեղ է: Իր «քաջագործություններով» նա հայտնի է նաև դպրոցում: Չարության պատճառով դասարանում նրան ոչ ոք չի սիրում, միայն ուսուցիչներն են, որ խղճալով «երեք»-ներ են նշանակում, չնայած որ Հովիկը ամիսներով նույնիսկ դասագիրք չի բացում: Զարմանալ կարելի է, բայց գրեթե բոլոր ուսուցիչներն էլ ասում են, որ Հովիկը սովորելու դեպքում կարող է նույնիսկ գերազանցիկ լինել:

Ես մինչև հիմա էլ չեմ ուզում հավատալ, որ Հովիկից մի բան դուրս կգա, որ նա կարող է լավ սովորող և լավ ընկեր դառնալ, բայց այն, ինչ կատարվեց նրա հետ, ինչպես նա հանկարծակի փոխվեց բոլորիս աչքի առաջ՝ ինձ ստիպում է հավատալ, որ Հովիկն իսկապես դարձել է բարի տղա և ազնիվ աշակերտ:

Դուք չեք հավատա, բայց Հովիկին փրկեց գիտե՞ք ով: Ջուր մի չարչարվեք,

Նկարը ԼԱԼԱ ԴԵՎԿԱՆՑԻ

մինչույն է, չեք գուշակի: Կարող եք ծիծաղել իմ ասածների վրա, չհավատալ ինձ, բայց ես ձեզ ասում եմ իսկական ճշմարտությունը: Հովիկին փրկեցին բարի կախարդը և նրա զորավոր փայտիկը:

Եթե չեք հավատում, հարցրեք մեր դասարանցիներին կամ էլ մեր բակի մեծերին ու փոքրերին, կամ էլ թեկուզ հենց իրեն՝ Հովիկին: Թող նա ինքը ձեզ պատմի իր գլխին եկածը, նրա պատմածը իմ և մյուսների ասածներից ավելի ճշմարիտ կլինի:

Դուք երևի ինձ արդեն գիտեք, իմ մասին ձեզ արդեն որոշ բաներ պատմել են: Այո, ես այն չար Հովիկն եմ, որն ամբողջ օրը կռիվ էր անում, բոլորին նեղացնում էր, դաս չէր սովորում...Այո, ես այդ նույն Հովիկն եմ: Բայց հիմա ուրիշ եմ, հավատացնում եմ ձեզ, բոլորովին ուրիշ:

Չեմ ուզում հիշել, թե առաջ ինչպիսին էի, որքան չար և երես առած, բայց մի քանի խոսքով կպատմեմ, որովհետև շատ հետաքրքիր է, թեև գիտեմ, որ հեքիաթ կհամարեք, բայց ես հո գիտեմ, որ ինչ ինձ հետ եղավ՝ զուտ ճշմարտություն է:

Այն ժամանակ սովորում էի հինգերորդ դասարանում (հիմա յոթերորդում եմ): Սարսափելի չար էի, ինձանից բացի ոչ-ոքի չէի սիրում: Ինձ նույնպես ոչ-ոք չէր սիրում, բոլորը երես էին թեքել: Բայց դե իմ պետքն էլ չէր, ես նույնիսկ հաճույք էի զգում դրանից, մինչև որ...

Մի անգամ, իմ հերթական խայտառակ պահվածքի համար (ես ծամածռություններով փորձում էի նմանակել ընկեր Գրիգորյանին) դուրս էին շպրտել դասարանից, և ես սուլելով, ձեռքերս շալվարիս գրպանները խոթած (ինձ համար պայուսակ գոյություն չուներ), վայելում էի իմ ազատությունը, երբ հանկարծ աչքերիս առաջ մի հսկայատիպ ծերունի հայտնըվեց: Ես սարսափից քիչ մնաց ուշաթափվեի, ցանկացա փախչել, բայց ոտներս կարծես գետնին մեխված լինեին: Դողդողալով բարձրացրի գլուխս և աչքերս հառեցի արտասովոր ծերունուն: Նա լիաբերան ժպտում էր, ինձ նայում խոշոր, կապույտ աչքերով: Նրա հայացքը բարի էր, ես հանգստացա, բայց լեզուս կարծես կպել էր գանցել:

— Ո՞ւր ես շտապում, Հովիկ,— հանկարծ լսվեց ծերունու փափուկ ձայնը: Ես չէի ուզում պատասխանել, ես ուզում էի փախչել, բայց ոտներս առաջվա պես մեխված էին գետնին, իսկ լեզուս պտըտվեց առանց իմ կամքի:

— Ես... ես դասից տուն եմ գնում, ինձ դուրս են արել դասարանից:

— Լավ չէ, լավ չէ,— նորից խոսեց ծերունին,— իսկ ես կարծում էի, թե դու կարգին տղա ես, լավ սովորող, ուշիմ և խելոք, պարզվում է անպետքի մեկն ես:

Ես նորից սկսեցի սարսափել նրանից: Հիմա նա ինձ հաստատ կծեծի: Սկսեցի շուրջս նայել՝ գոնե մեկը օգնության գար, բայց փողոցը ամայի էր, ասես գիշեր լիներ: Չգիտեի ինչ անել:

Նա հանդարտ մոտեցավ ինձ (հիմա հաստատ կխփի) և բռնեց դողդողացող ձեռքս: Ձեռքս բռնեց և գլուխը կախ ինչ-որ բան էր մտածում: Երկար լռելուց հետո ասաց.

— Դու արժանի ես ամենախիստ պատժի: Ես շատ լավ գիտեմ, թե դու ով ես և ինչեր ես արել: Բայց ես բարի ծերունի եմ, բոլոր մարդկանց միայն բարին եմ կամենում: Ուրեմն՝ քեզ էլ հիմա կօգնեմ, գուցե դու հասկանաս իմ արած լավությունը և կարգին տղա դառնաս:

Այս խոսքերից հետո նա գրպանից հանեց մի շողշողուն, լույս արձակող փայտիկ և մեկնեց ինձ:

— Վերցրու: Քո ուզածը երևի սա էր, որ ամեն ինչ ունենաս և ամեն ինչ կարողանաս, սա կախարդական փայտիկ է, և նրա զորությամբ դու կարող ես իրագործել ամեն ինչ՝ ինչ խելքիդ կփչի: Վերցրու, այսուհետև սա քոնն է...

Այդ պահին փայտիկը հայտնվեց իմ աջ ձեռքում, ես դեռ չէի հասցրել սարսափից և զարմանքից ուշքի գալ, կախարդ ծերունին արդեն անհետացել էր: Դեռ մի քանի րոպե շշմած էի, բայց շուտով շողշողուն փայտիկը վերադարձրեց ինձ դեպի կյանք, և ես հաղթական ճիչերով վազեցի առաջ:

Հույս ունեի, որ կախարդական փայտիկը ինձ կդարձնի աշխարհի տերը և ամենաերջանիկ մարդը, բայց եղավ հակառակը: Ես դուրս մնացի աշխարհից և դարձա ամենադժբախտը: Դուք զարմանո՞ւմ եք: Իզուր: Կախարդ ծերունին ինձ ոչ թե լավություն էր արել, այլ պատժել ուզեց և հենց դրանով էլ օգնել ինձ:

Փայտիկը ձեռքիս, գլուխս բարձր՝ ես

մտա մեր բակ: Բոլոր երեխաները խաղում էին՝ խաղաղ, հանգիստ: Դա ինձ դուր չեկավ: Տեսնենք փայտիկի զորությունը,— ասացի ինքս ինձ ու փայտիկը շարժեցի՝ մտքիս մեջ հրամայելով, որ բոլոր երեխաներին իրար հետ կռվեցնի: Եվ ի՜նչ, մի րոպեից ամբողջ բակը խառնվեց իրար, հանգիստ խաղացող երեխաները սկսեցին մեկմեկու քարկոծել, իրար մազերից քաշքշել և նման բաներ:

Չեմ ուզում երկար շարունակել իմ կատարած «քաջագործությունների» պատմությունը, որովհետև կախարդական փայտիկը ես գործադրում էի միայն ի չարս՝ մեկ բակում էի ամեն ինչ իրար խառնում, մեկ դպրոցում և ամենավատը՝ հաճախ փողոցներում էի մարդկանց իրենց անցուդարձից կտրում և գցում անհարմար, երբեմն նաև վտանգավոր վիճակի մեջ: Եվ այս ամենը ինձ խոր հաճույք էր պատճառում:

Բայց աշխարհում ամեն ինչին վերջ կա, եկավ նաև իմ անմտությունների, իմ հիմար գործունեության վերջը:

Մի օր հեռուստատեսությամբ ցուցադրեցին «Անտեսանելի մարդը» գեղարվեստական կինոնկարը: Տեսնելով անտեսանելի մարդու հրաշքը, իմ խելքին փչեց հիմա էլ անտեսանելի դառնալ, չէ՞ որ կախարդական փայտիկով ամեն ինչ կարող էի:

Հրաշագործ փայտիկը կատարեց նաև իմ այս կամքը, և ես դարձա անտեսանելի: Բայց այս անգամ հիացմունք չապրեցի, այլ ամենասոսկալի սարսափ: Անտեսանելի դառնալու պահին ես կանգնել էի հայելու դիմաց, որպեսզի դիտեմ իմ նոր հայտնագործությունը: Բայց ոչինչ չտեսա, որովհետև հայելին դատարկ էր: Նույն պահին զարհուրած փորձեցի վերադարձնել կերպարանքս, բայց առաջին անգամ կախարդական փայտիկը չենթարկվեց իմ կամքին: Ես էլի ու էլի փորձեցի, սակայն՝ իզուր: Կախարդ ծերունու նվերը ինձ համար այլևս կորցրել էր իր հրաշագործ ուժը: Ես սկսեցի դառնորեն լաց լինել, որովհետև նոր միայն հասկացա, որ ծերունին պատժել է ինձ:

Այդպես անտեսանելի գնացի իմ հարազատների, իմ ընկերների, իմ բարեկամների մոտ, բայց ոչ ոք ինձ չլսեց և չճանաչեց: Որովհետև իմ ձայնը միայն ես էի լսում, և իմ ներկայությունը ինձանից բացի ոչ ոք չէր զգում:

Գուցե չեք հավատա, բայց շատ հաշտվեցի իմ ողբալի դրության հետ, որովհետև կարծում էի, որ լիովին արժանի եմ այս պատժին: Որոշելով, որ իմ կյանքը այսուհետ այսպես է անցնելու, ես ջանացի գոնե հիմա մարդկանց օգտակար լինել և ինչ-որ չափով փոխհատուցել իմ կատարած չարագործությունների համար:

Փողոցներում օգնում էի ծերերին ծանր բեռ տանելիս կամ ճանապարհը անցնելիս: Բոլորի համար աննկատելի մաքրեցի և կարգավորեցի մեր բակը, որը ինքս էի ավերել: Եվ այսպես մարդկանց օգտակար լինելը ինձ համար դարձավ ամենօրյա պահանջ, և դա էր, որ ինձ մխիթարում էր իմ տխուր, անտեսանելի կյանքում:

Մի օր էլ, երբ մի ծեր կնոջ ծանր բեռը կողքից աներևույթ բռնած՝ օգնում էի, որ առանց հոգնելու հասներ տուն, զգացի, որ մեկը բռնեց թևս, ես ապշած շուռ եկա, չէ՞ որ իմ ներկայությունը զգում էի միայն ես: Իմ առջև կանգնած էր կախարդ ծերունին և ժպտում էր լուսավոր ժպիտով:

— Բաց թող, Հովիկ, տատիկի բեռը,— մնացած ճամփան նա կգնա նույն թեթև զամբյուղով:

Ես նայեցի, իսկապես, տատիկը շարունակում էր գնալ նույն հանգստությամբ, առանց հոգնելու:

—Տուր ինձ կախարդական փայտիկը,— ասաց ծերունին:

Ես իմ աներևույթ գրպանից հանեցի անտեսանելի դարձած փայտիկը և մեկնեցի նրան, ծերունին վերցրեց և հրամայեց փակել աչքերս:

— Բա՛ց արա,— մեկ րոպեից մեղմորեն ասաց նա,— բաց արա աչքերդ և նայիր քեզ:

Դողդողալով բացեցի աչքերս և տեսա ինձ իմ լրիվ մարդկային կերպարանքով:

Իմ հարազատները և ընկերները սրտաբաց ընդունեցին ինձ, որովհետև գրեթե 3 ամիս նրանց համար կորած էի եղել, իսկ իմ սիրելի մայրը ուրախությունից աննդհատ լաց էր լինում և գրկից բաց չէր թողնում:

Իմ գլխին եկած պատմությանը բոլորը հավատացին, որովհետև զգացել էին իմ բացակայությունը, ու նաև տեսնում էին, որ ես հիմա բոլորովին ուրիշ տղա եմ դարձել՝ զրուցասեր, ժպտերես և մարդամոտ:

**ՔՐԻՍՏԻՆԵ ԳԵՎՈՐԳՅԱՆ**
**Ստ. Զորյանի անվան № 56 դպրոցի**
**6-րդ Գ դասարանի աշակերտուհի**

# Թոռներս հայ դպրոց կ'երթան

Լուսանկարը՝ ԶԱՎԷՆ ԽԱՉԻԿԵԱՆԻ

Դուք ըսէք, այս սովորութիւնս լա՞վ է, թէ՞ վատ: Ամեն տարի, երբ կմոտենան դպրոցական վերամուտի օրերը, տեսակ մը կարոտ կպարուրէ սիրտս, դպրոց երթալու կարոտը: Հիմա մեծ հայր եմ, ալ ի՞նչ դպրոց: Բայց, կխորհիմ, թէ աշխարհը ինքը դպրոց մըն է ու մենք, ապրողշնչող մարդիկս, քննութիւններու մէջ ենք ոչ թէ տարին երկու անգամ, այլ ամեն օր:

Քննութեան մէջ ենք, երբ բարեկամի մը չենք բարևեր, ուստի, այդ քննութենէն կտրուած ենք, ստացած ենք անբավա-

րար գնահատական:

Անբավարար է մեր գնահատականը, երբ սուտ խօսած ենք, երբ վշտացուցած ենք մեր դրացին, հարևանները ու այսպես շարունակ:

Որքան ջանք ու ճիգ պետք է բարձր գնահատականներ ստանալու համար կյանքի դպրոցին մեջ:

Խորհրդածություններու հորձանքին մեջ պիտի իյնամ ուր որ է: Ես պիտի խօսէի թոռներուս մասին: Ուրեմն խօսիմ:

Դպրոց երթալու, ամեն վերամուտի դպրոցի առաջին զանգը լսելու կարօտը զիս մղած է, որ ամեն տարի, թոռներս ես տանիմ դպրոց, ուսումնական տարուան առաջին օրը:

Օրեր առաջ թոռներուս՝ Նուշիկին ու Նանորին, կըսեմ՝ բալիկներ, չմոռնաք, երեք օր մնաց վերամուտին, միասին պիտի երթանք դպրոց: Կանուխ կարթննաք, ամառը անցավ, կհագվիք դպրոցական ըզգեստ, կշտկեք ձեր անկողինները, ճաշակով կհարդարեք ձեր սենյակը, Ћմիջիայլոց ըսեմ, երբ ես փոքր էի, սեփական սենյակ ունեի ձեզի պես: Երբ ես տամ ձեր դռան զանգը, պատրաստ կըլլաք:

Կըճռվողեն թոռնիկներս, ու միասին կերթանք դպրոց:

Անցյալ տարի, 1988—1989 դպրոցական վերամուտին, Նանորիկը մոռցած էր ինձի տուած խոստումը, ժամադրուած էր իր ընկերուհիներեն մեկուն հետ և իմ գալես քառորդ մը առաջ մեկնած դպրոց:

Քիչ մը տխրեցա այդ առիթով:

Այս տարի չպատահեցավ նման դեպք, նախազգուշացուցի զինք:

Ահա դարձյալ, այս տարի, 1989—1990 դպրոցական վերամուտին, թոռներուս հետ դպրոց կերթամ առաջին զանգը լըսելու: Մեխակ կուտամ թոռնիկներուս, որ ծաղիկով երթան և ուսումով ծաղկին:

Ճանապարհին կը խօսակցինք:

Կհարցնեմ.— Ջագուկներ, հայերենը մեր մայր լեզուն է, չէ՞: Անշո՜ւշտ՝ կպատասխանեն միասին: Հայերեն բացի ո՞վ կգործածե հայերենը: Կլռեն: Ես իրենց կբացատրեմ, որ աշխարհի վրա մեկ երկու տասնյակ մասնագետներ կան, ոչ հայ լեզվաբաններ, որոնք գիտեն մեր լեզուն և ուսումնասիրություններ կկատարեն: Ուրի՞շ, հարց կուտամ, ֆրանսացիները հայերեն կխօսի՞ն, անգլիացիները, ռուսները, գերմանացիները, իտալացիք, իսպանացիք հայերեն կխօսի՞ն: Ոչ, չեն խօսիր: Միայն հայերը հայերեն կխօսին:

Կշարունակեմ հարցումս.— Եթե հայերըն ալ դուդրին հայերեն խօսելե, ի՞նչ կըլլայ մեր լեզվին: Մեր լեզուն կմեռնի: Որպեսզի չմեռնի, ի՞նչ պիտի ընենք: Մենք հայերեն պիտի խօսինք, կպատասխանեն թոռնիկներս:

Ձեր լեզուն սիրեմ, կըսեմ միտես բարձըր ձայնով, ձայնով մը, որ ես լսեմ, լըսեմ ու լիանամ:

Բայց բալիկներ, կըսեմ, կնկատե՞ք, որ հայերե բացի ոչ մեկ ժողովուրդ կը գործածե հայերեն սքանչելի լեզուն— ո՛չ անգլիացին, ո՛չ ամերիկացին, ո՛չ ֆրանսացին, ո՛չ ռուսը, ո՛չ գերմանացին, բայց հայը կխօսի այս բոլոր լեզուները: Ուրիշ լեզու սորվիլ չի նշանակեր մոռնալ մայրենի լեզուն՝ հայերենը:

Հետո, լավ իմացեք, մեր մեծագույն գիտնականներեն, հայության պարծանքը եղող Վիկտոր Համբարձումյանը ըսած է.— Գիտնական մը, որ լավագույնս կը տիրապետե իր մայրենի լեզվին, կրնա նորանոր գյուտեր իրագործել:

Ուրիշ հարց մըն ալ կա, կավելացնեմ.— Պետք է մաքուր գործածենք մեր լեզուն: Չաղճատենք, չաղավաղենք: Դուք աղտոտ դեմքով կուզե՞ք փողոց ելլել, աղտոտ հագուստով կուզե՞ք դպրոց երթալ: Ուրեմն, կարելի չէ նաև լեզուն, հայերեն լեզուն աղտոտել:

Երբ ձեր ընկերները սխալ խօսին հայերենը, մի պոռաք անոնց վրա, դուք ճիշտը խօսեցեք, ճիշտ պատասխանեցեք, որ անոնք ալ ձեզ օրինակեն:

Հասանք դպրոց:

Թոռնիկներս իմ համբույրովս ներս մըտան այդ սրբավայրեն:

Երկու րոպե կըսպասեի զանգին: Հնչեց 1989—1990 դպրոցական տարվան առաջին օրվան առաջին զանգը: Ես անկշռականության մեջ էի, բոլոր դպրոցական տարիներուս զանգերուն վերհուշը կապրեի:

Սփյուռքի մեջ տակավին կըշարունակվի հայ դպրոցը:

Մատա՜ղ ըլլամ քեզի, հայ դպրոց: Ինչ լավ է, որ կաս: Ինչ լավ է, որ թոռներս քեզմով հայ կմեծնան:

Օրհնյա՜լ ըլլաս, հայ դպրոց:

Շնորհավոր հայ դպրոցի Նոր տարին:

Համբո՜ւյր քեզի, Սուրբ Մեսրոպ:

ԹՈՐՈՍ ԹՈՐԱՆՅԱՆ
Հալեպ, 1989 սեպտեմբեր,
Դպրոցական նոր տարի




Ամենափոքր երեխայի հիշողության մեջ էլ թարմ է այն, որ ճագարների մի ընտանիք ապրում էր գայլերի ոհմակի հարևանությամբ: Գայլերը հայտարարեցին, որ ճագարների ապրելակերպը իրենց դուր չի գալիս: Իսկ գայլերը պարծենում էին իրենց ապրելակերպով, որովհետև դա համարում էին ապրելու միակ եղանակը: Մի օր երկրաշարժից մի քանի գայլ սատկեցին: Պատահարը ճագարներին վերագրվեց, որովհետև քաջ հայտնի է, որ ճագարները իրենց ետևի ոտներով ծեծում են գետինը, որից և երկրաշարժ է առաջ գալիս: Մի այլ գիշեր էլ կայծակը մի գայլ խփեց: Դա էլ ճագարներին վերագրվեց, որովհետև հանրահայտ է, որ գազար ուտողներն են կայծակ առաջացնում: Գայլերը սպառնացին ճագարներին քաղաքակրթել, եթե նրանք չուղղեն իրենց վարքը:

Ճագարները որոշեցին մի անմարդաբնակ կղզի ապաստանել:

Մյուս կենդանիները, որոնք գայլերից շատ հեռու էին ապրում, ամոթանք տվեցին ճագարներին, ասելով. «Պետք է քաջաբար մնաք ձեր տեղում: Փախստականները տեղ չունեն այս աշխարհում: Եթե գայլերը ձեզ վրա հարձակվեն, ամենայն հավանականությամբ մենք օգնության կգանք»: Դրանից հետո ճագարները շարունակեցին գայլերի հարևանությամբ ապրել: Մի օր էլ մեծ ջրհեղեղ սկսվեց, և բազմաթիվ գայլեր խեղդվեցին: Սա էլ ճագարներին վերագրվեց, որովհետև լավ հայտնի է, որ երկարականջ գազարակերներն են ջրհեղեղների պատճառը: Գայլերը հարձակվեցին ճագարների վրա սեփական շահերի պաշտպանության համար: Ճագարներին բանտարկեցին մի մութ քարայրում՝ հանուն սեփական ապահովության: Մի քանի շաբաթ անցավ, և ճագարների մասին ոչ մի լուր չկար: Մյուս կենդանիները պահանջեցին իմանալ, թե ինչ էր պատահել նրանց: Գայլերը պատասխանեցին, որ կերել են ճագարներին և քանի որ կերել են, ապա ճագարների հարցը գայլերի ներքին գործն է միայն: Բայց մյուս կենդանիները գայլերին նախազգուշացրին, թե իրենք կարող են միանալ և գայլերի դեմ դուրս գալ, եթե գայլերը արդարացուցիչ մի պատճառ չգտնեն ճագարների ոչնչացման համար: Գայլերը տվեցին այդ արդարացուցիչ պատճառը: «Նրանք փորձում էին փախչել,— ասացին անմեղ գայլերը,— և ինչպես դուք էլ գիտեք, փախըստականները այս աշխարհում տեղ չունեն»:

ԲԱՐՈՅԱԿԱՆ— վազիր, ոչ թե քայլիր դեպի անմարդաբնակ կղզին:



Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ԽԱՉԻԿՅԱՆԻ

ՄԱՔՍԻՄ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
«Խորհրդային Ղարաբաղ» թերթի խմբագիր

# Դավթասար

Մինչև գնացածները կվերադառնան, մինչև իսկական տերերը կհայտնվեն,— տաքերը ընկել են, անասունը պետք է սար բարձրանա,— ճանապարհի կեռմանը դարձել է դավադիր, ձորի բերանը վիշապի երախ է,— ո՞վ կա թաքնված Սև քարի ետևը,—ահով լիքն են սար ու ձոր, ծառից պոկված չոր ճյուղը հրացանի տըրաքոց է, չի իմացվում՝ կաչաղակի չոչըռոցը ով արձակեց՝ գլխակե՞րը, թե՞ մարդը՝ օդի մեջ ահա սարսուռ է, վտանգի շունչ՝ անասունը սար տանող տղամարդ է պետք,— ահա այս միջոցին մինչև գընացողները կվերադառնան, մինչև իսկական տերերը կգան կամ չեն գա, պետք է մարդ գտնվի, որ անասունը տանի սար: Գնացողները ուշանում են, լուր են տվել, թե որոշել են վերադառնալ իրենց՝ գար-

նանը ծաղկահոտ, աշնանը՝ խնկաբույր հանդ ու շենը,— ինչ աշխարհ էլ գնաս, անիծած Չափարն ուրիշ է,— անտառին քոլ են ասում՝ քոլից եկող կխտարի բառաչը բերնիբերան լցնում է ձորերը, գալիս խառնվում վարարած Ծարթառի աղմուկին, կանաչ մրտոց բացատում ոստոստացող կաքավի կաղկղան սարսռով է լցնում հին որսկանի սիրտը, կածանի մի կեռմանում գետնավարդի բույրը խըփում է դեմքիդ ու ռունգերդ լայն բացվում են, մնում ես բերանդ բացուխուփ:

Էս մտապատկերը, էս մտապատկերի կորուստը, գոյատևելու բնազդը տեղահան է արել չափարեցուն, եղծահողցուն, խնձրիստանցուն, սպիտակաշենցուն, տոնաշենցուն, միտդ եկած գյուղի անունը տաս՝ ճիշտ է,— ամեն տեղից լուր են տըվել, որ գալիս են, բայց ճանապարհի կա՞պըն է քանդվել, եկողի կա՞մքն է թուլացել, ինչ է պատահել, դեռ չեն հասել,— օրերը անցնում են, անասունը պետք է պարտադիր սար բարձրացնել, ինչպես պարտադիր է կանաչ արտի դեղին հասունանալը:

Եվ նորից մեր կանայք՝ մեր սիրասուն, մեր փխրուն, մեր տղամարդ կանայք դարձան իրենց որդու, իրենց եղբոր, իրենց ամուսնու մեջքին կանգնած հավատարիմը.— զինվորները շղթայել են Ստեփանակերտի հրապարակը, որտեղ մեր կամքը, մեր ձայնը, մեր ողոքումները պետք է գումարվեն ու միամիտ հղվեն առ Մոսկվա,— զինվորները խիտ շարժվել են, մեքենաները ոռքանդ միացվել են իրար, հետո էլի ուրիշ հագուստով ուրիշներն են շարվել, որ ամայի հրապարակը համր պահպանվի,— ջահել հարսը մըղվում է առաջ, խանդակաթ կուրծքը դեմ է արել հրացանի փողին և գգվանքի ու սիրո զենքը դառնում է ավելի զորեղ.— ջահել, կարմրաթուշ զինվոր տղան մի պահ կարկամում է, չի իմանում ինչպես ետ մղի էդ զորությունը,— շղթան խախտվում է, և կանայք՝ աղջիկ ու հարս, մեր մամիկները մտնում են հրապարակ և այսպես իրենց որդու, եղբոր, ամուսնու համար բացվում է ասպարեզ:

Չափարեցի կանանց համար հրապարակը Մռովասարի փեշերն են, որտեղ պետք է հոտը տանել, որպեսզի Մռովասարի իրենց պատկանող արոտները մընան իրենցը, որպեսզի ծաղկավետ էս լանջերին չափարեցու հնավանդ բարբառով, ծոր տալով ջղայնությունը պատառտի կոշտ բառի մեջ ու նետի ձորի մյուս ափին երևացողին.

— Ախպե՛ր, ձեր էդ կողմերում ճակատը նաղաշ երինջ չես տեսե՞լ...

— Վայ թե օվշառը տարել է...

— Ես օվշառի օխտը պորտը՜...

Մռովա իրենց սարը պետք է իրենցը մնա՝ հրամանից էլ պարտադիր էս պահանջը տղաներին հավաքել է Մռովա իրենց սարը՝ իրենց անասունի արոտատեղին, իրենց հետ սար եկող իրենց հարսերի մահիճը, մոր ետևից գոռալով սար եկած լակոտ երեխայի խաղատեղին,— փոքրուց էս ծաղկահոտերը շնչում են, ձորի կռանատակից բխող աղբյուրից ատամ սառեցնելով ջուր են խմում՝ ականջը հեռավոր ամպերի որոտին,— նախրապանը անասունը բեջիթ քշում է մակաղատեղ, մայրը տագնապալից կանչում է՝ հե՜-հե՜, Արայիկ, շուտ եկ տո՜ւն,— տունը թաղիքի վրանն է,— մայրը հետո հուշում է ուրիշ անելիքը՝ կարկուտը հիմա կկսվի, մտիր մի ծառի տակ, որ կարկուտը քեզ չբռնի, կարկուտը քեզ տանի՝ պրծնեմ քեզանի՞ց,— մոր կոինչի վըրա հայրը բամփում է բերանը ճղած կընոջը՝ կտրիր կոկորդդ, թե չէ գիտես, հա՜.— ամենօրյա էս տագնապները, պայթող ամպերը, սարի կրծքին կայծակի խաղամերուկ մտրակելն ու հեռու քերծից եկած կերկեր ձայները՝ բիա՜...,— էս ի՞նչ կենդանու երամակ անցավ...

Մռովա սարի իրենց բաժինը պետք է պահեն՝ գյուղի տղերքը հավաքվել են իրար գլխի ու որոշել, որ մինչև անասունը բերվի յայլաղ, պետք է պահակ կանգնել: Գյուղի տղաները՝ երկուսին մի հըրացան, պինդ կանգնել են, որ սարը պահվի: Ումի՞ց պահեն, ինչո՞ւ պահեն, սարը չորքոտանի գոմշակով չի, որ առաջդ արած տանես քո յուրտը, սարը աչքադրած աղջիկ չի, որ դնես ձիուդ թամբին ու փախցնես մեկ ուրիշ սար: Ստացվում է, որ անասուն սարը կարելի է առևանգել:

Տղաներով գնացել էին սար, որ սարը չառևանգվի ու ստացվել է այնպես, որ տըղաներից Դավիթը անհետ կորել է: Ո՞նց եղավ: Ո՞վ արեց: Ո՞ր հետքով, ո՞ւր գընալ՝ տղաները գլուխ են կոտրում ու չեն կարողանում պատասխանը գտնել: Լուր տվին գյուղ, և գյուղը տրաքած եկավ.— ո՞նց թե կորել է, ասեղ չի, որ կորչի, ե-

րեխա չէ, որ մոլորվի, տանողը թող մեր երեխին ետ բերի՜,—կանչում են կանայք, տղամարդիկ ասում են կրճտացնում։ Պահակ ընկերները մնացել էին քոռուփոշման, չէին կարողանում ոչ հարազատի աչքին նայել և ոչ իրար աչքի նայել.— գուցե մուխանազ օվշառը տմարդություն էր արել, գուցե ճամփաքաժնում հանդիպել է ով է իմանում ում՝ թուրք աղըրբեջանցու կամ օվշառ քրդի, կամ մի անդունդի մոտ անզգույշ է եղել,—հազար կասկած տեղահան է արել մի ամբողջ գյուղ։

Հետո որ Դավիթը գտնվեց,— հազար անգամ ոտքերը կոխտալով եկել-գնացել են, կոկորդ են պատռել, բայց անպիտանը մրափից չի արթնացել, հոնի օդին մակարդել էր քունը, կուրծքը շոյող սյուքը մայրական քաղցր օրոր էր դարձել, ոտքից բռնիր ու քաշ տուր մինչև Օխտն աղբյուրը,— էսպես քնով էր անցել ու ողջ գյուղը տեղահան եղած իրենց անհետ կորած Դավիթին էր ման գալիս։ Երբ գտնըվեց,— ճմլկոտալով, աչքերը բռունցք արած տրորելով, ոտքերը ընդարձակ չռելով, անիմաստ-մեղավոր ժպտալով նայել էր իրեն նայող մարդկանց ու չէր հասկացել, թե ինքը որտեղ է, ինչ է եղել.— թե սարումն է, էս կին-երեխեքը ինչ են անում ուշ Մոռվասարում,— էսպես մոլորված գրկից գիրկ էր փոխանցվում։ Տղաները չէին ամաչել աչքերին ցայտած արցունքներից, գրկած պինդ պահում էին կրծքներին, ոնց որ թե ամանաթ է, հանկարծ էլի չկորչի։

Դարձի ճամփին Դավիթը դարձավ նախկին Դավիթը, տղաների մկանները արդեն թուլացել էին, սկսեցին լեզվախած տալը,— այ տղա, էդ ո՞նց եղավ, որ մի օր ու մի գիշեր քնով մնացիր, վայ թե վախից լեզուդ բռնվել է.— հա, վախից ամեն ինչ սպասելի է.— գուցե երազ ես տեսել, օվշառ քրդի ջահել կանին գոմշակովի մածուն է բերել, գոմեշի սերից ավելի համեղը օվշառի ջահել սիրունն է։ Դավիթը ուզում է առարկել, բայց հիշում է իր բռնած գործը ու մեղավոր ժպտում։

Առաջինը ով ասաց՝ չիմացվեց, նախ տվին ծիծաղեցին, հետո լռջացան, ասացին իսկականն է, լավ էլ հնչում է, կդառնա հիշատակ ու մեր հայի անունը կմնա մեր սարի վրա։ Կատակով ասին, հետո լրջորեն եղավ ճիշտ, սարի անունը դրին Դավթասար։

Բայց որ Դավթասարի անունը պահպանվի, չափարեցող անասունը պիտի բերվի Դավթասար՝ չորս կողմը ոնց էլ աչք ես ածում, եղած մի քանի տղամարդիկ կամ ղեկավար են կամ վարորդ ու մեխանիզատոր։

Կոլտնտեսության ջահել նախագահը իր մորն ասաց՝ պիտի գնաս սար, գյուղատնտեսը մորն ասաց նախագահի ասածը, ջահել հարսը թողեց ծխախոտի իր մարգը, ընկերները թող իր բաժին ծխախոտը մշակեն, ասաց՝ ես էլ եմ գնում սար, գյուղի երկու ուսուցչուհիներ մատյանները դրեցին լղար դարակում ու միացան մյուսներին։

Չափար գյուղի տավարը տարան Դավթասար, ինչպես անցյալ տարի, ինչպես հարյուր տարի առաջ։

Նազիկը Անդոնի հետ եկավ սար։ Անդոնը մեծ տղա է արդեն, «հը» անի՝ կլինի տղամարդ,— ճկուն ցատկում է ձիու մեջքին ու ձիու ականջը մտած սուրում սարն ի վեր, որ տավարի գլուխը շուռ տա, տավարը վտանգավոր հեռացել է, գելը վրա կտա, գելից վտանգավորը, օվշառն է,— ձին մեջքին զգալով ճապուկ Անդոնի ոտքերի խտղտոցը,— տղամարդու կոշտ խթանի կարոտով սկսեց թեթև վարգել, Անտոնը ուրախությունից ծղըրտում է, ոտքերով սեղմվում ձիուն, ռունգերը լայնանում են, ծաղկահոտ օդը խուժում է թոքերը ու թոքերից արձակված խրխինջը տարածվում է հեռավոր հեռուն,— քամին փոփոեցնում է Անդոնի արնագույն շապիկը ու ստացվում է զամբիկ ձին Անդոնին չի թողնում, մի կտոր բոց է տանում։

Նազիկը գորովանքով նայում է մեծացող Անդոնին, սիրտը լցվում է ուրախությամբ ու տագնապով,— իր Անդոնը, տանը թողած Աշխենը, որ իր տաս տարեկանում Անդրանիկ պապի ու Ջորայր հոր հոգս քաշողն է դարձել, և էս զոզռան Ժիրայրիկը՝ քիթը կախ, անբան լակոտ, կրակին ընկնես՝ ետ չի քաշի, առավոտից զուզգ է տալիս, մայրն ասում է հորթը կապի սյունին, որ մոր տակը չմըտնի,— մեջքը մորն է անում՝ այսինքն թե՝ չեմ կապում,— Ժիրայրիկ տղա, հորթը մորը ծծեց, հորթի տեղ քեզ եմ ծառին կապելու, կարճ կապելու եմ, որ երկար ծծեմ, դու իմ ծծին ծանոթ չե՞ս, երեկ դու չէի՞ր կովի թրիքը կոխ տալով փախչողը,— ո՞ւմ ոտքը սկեց ու թրքաթաթախ

փովեց գետնին,— գնա հորթը կապիր ու շան լակամանն էլ ջուր լցրու,— էս մի վիրավորանքը Ժիրայրիկը այլևս չի կարողանում տանել, անշնորհք քիթը վեր է քաշում.— մայրը հարյուր անգամ ասել է՝ չանես, ձեր ցեղի էդ սովորությունից զըզվում եմ, մարմինս դուրս է տալիս, մեծ տղա ես, գնա կարգին քիթդ մաքրիր, քսիր էդ խոտերը մաքրիր, հացուջրից կտրվել եմ,— Ժիրայրիկը պայծառանում է, չբռնվելու տարածությամբ մոտիկ կանգնում մորը,— որ մեծ տղա եմ, մի անգամ էլ ես ձին նստեմ, գնամ տավարի ետևից, մի անգամ էլ հորթը Անդոնը կապի, տավարի ետևից ես գնամ, ձին ես տանեմ ջրելու, շան լակամանը Անդոնը լցնի:— Մայրը մոտենում է Ժիրայրիկին, Ժիրայրիկը չի փախչում՝ մոր աչքերում ծեծի վճիռ չկար, մերժված ու հպարտ կանգնեց,— մայրը տղայի գլուխն առավ գիրկը, պաչեց գլուխը, էնպես քնեցրեց երեխային, քթից կոշտ բռնեց ու ասաց՝ խնչիր, Ժիրայրիկը չարեց, աներ՝ կլիներ փոքր երեխա, գլուխն ու քիթը պոկելով մոր գրկից, զոռալով, ձեռքն ընկած քարը հորթի ետևից նետելով, հորթի հետ, իր վիրավորանքի հետ իր տաք արտասուքներից ազատվելով գնաց կորավ մոր հայացքից:

— Ժիրայրիկ տղա, քո հոր ականջը գցե՜մ...

Մեր կանայք, մեր սիրասուն, մեր տըղամարդ կանայք անասունը բերին Դավթասար, ու նորից սարը դարձավ չխլված իրենցը:

Մեքենայով շուտ է լինում, մեքենայով ճանապարհը երկարում է, ժամանակը կրճատվում: Այդպես կարելի է բեջիթ հասնել Դավթասար, որպեսզի մայրիկը գուրգուրվի, հարսը սիրվի, սարի օդում մաշկը մգած երեխաների թուշը պաչվի: Ուտելիք տանեն, հիվանդի համար՝ դեղ, անասունի վիճակը ստուգեն ու, որպեսզի մի գիշեր էլ Դավթասարի պաղպաջուն օդերով իրենց երեսը գուրգուրվի, վայելեն սարի գիշերվա ուրիշ տեսակի լռությունը՝ էնպես անապակ, որ լարված նյարդի սպեղանի է դառնում, վառվող սրտին հովություն է բերում:

Մեքենայի ճանապարհը մի փոքր անցնում է Օվշառի հողով, ու տղաները դա հաշվի չառան: Մենք եղբայրներ ենք՝ քիրվա-աշնա՝ ասում էինք ու հավատում: Թուրք ադրբեջանցին՝ քիրվա, հայ քրիստոնյան՝ աշնա: Հավատավոր չափարցիները դեռ հավատում էին դրան: Այսպես տղաներով՝ նախագահ, գյուղատնտես, տրակտորիստ, ուրիշներ՝ ճանապարհվեցին Դավթասար: Օվշառ քիրվայի հողում զինվոր-պարետի ու միլիցիայի տեղական կադրերի՝ ձգանը լարած հրացան-ավտոմատներով զինավառ խումբը կանգնեց դեմ-դիմաց: Ո՞ւր եք գնում, ինչո՞ւ եք գնում, դուրս եկեք մեքենայից, մի քիչ հեռացեք, որ մեքենան ստուգվի,— տղաները այստեղ սխալվեցին, որովհետև մեքենայում՝ արդեն քանի անգամ փորձված միջոցով «հայտնաբերվեց» արգելված զենք: Տղաների կռները ծալեցին մեջքներին ու տարան Քելբաջար, որ «գործ» ստեղծվի: «Գործ» ստեղծելուց առաջ Քելբաջարում, Շուշվա բանտից փոխառած միջոցներով, կապոտած տղաներին ջարդեցին, քիրվայի արքով ու ոխերիմությամբ տրորվեցին շատ առաջների ու էլ առաջների հանգով:

Գյուղը ծկլթաց՝ մեր տղաները՝ գյուղի ծո՜ւծը, մեր ապագա՜ն, մեր երեխաների հայրիկնե՜րը, մեր հանդերի նա՜խշը, մեր հողվորնե՜րը, մեր տան պահապաննե՜րը, մեր ամեն ի՜նչը որտե՞ղ են... Գյուղը ծկլթաց, ու Ստեփանակերտը յոթնապատիկ ալիք տվեց սպառնագին: Որպեսզի ոչ դժվար կռահվող հետևանքներ չլինեն, որպեսզի բռունցքված մատները թուլանան, գեներալ պարետը իր ոտքով գնաց իր ենթակա՝ Քելբաջարի չգեներալ պարետի մոտ, որ օվշառի ճիրաններից պոկվեն մեր սիրասուն տղաները և որպեսզի ջարդված կողերը կցան արվեն, տրորված լյարդը բուժվի, հաշմված մարմինները վերականգնվեն:

... Օրը ծանր է բացվում Չափար գյուղի վրա: Հանդվորը ինչո՞ւ ուշացավ, վա՜խ, օրը մթնել է, բայց շրջկենտրոն գնացած մեքենան դեռ չի եկել, վար անող տրակտորի ձայնը ինչո՞ւ լռեց,—այս տագնապների ուղեկցությամբ հողը մշակվում է, անասունը արոտ է տարվում, երեխա է ծնվում, կնունք է արվում, նոր տան հիմք է փորվում, երեխաները ծնողներին հանգիստ չեն տալիս՝ «հայժող» չունեմ, աշխարհի աչքից դուրս մի տեղ հոգնած գյուղացին ուհար պառկել է հողին ու միամիտ երազում է...

Իրական այս պատմության մեջ պահպանվել են միայն տեղանունները:

# ԻՆՉ Է ԳՐԵԼ ՄԱՆԿԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ 1937-ԻՆ

Ֆոտոմոնտաժը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

### ԸՆԿԵՐ ԲԵՐԻԱՅԻՆ ՌԱՊՈՐՏ ԿՆԵՐԿԱՅԱՑՆԵՆՔ

Համմիկի օղակում քննելով Հայաստանի և եղբայրական Վրաստանի ու Ադրբեջանի պիոներների և դպրոցականների կնքած սոցմրցման պայմանագիրը, որոշեցին ուսումնական տարին լավ և գերազանց գնահատականներով փակել:

Նրանք այնպես են սովորում, որ ուսումնական տարվա վերջում բոլորը լավ և գերազանց գնահատականներ ունենան և ընկեր Բերիային ռապորտ ներկայացնելու իրավունք ձեռք բերեն:

### ԼՐՏԵՍԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԸ

Ընկեր Ստալինը Համ.Կ(բ)Կ Կենտկոմի մարտյան պլենումում մատնանշեց, որ տրոցկիստական հակահեղափոխական ինտերնացիոնալը մեծ մասամբ բաղկացած է լրտեսներից, դիվերսանտներից: Կենտկոմի պլենումից հետո երևան բերված բազմաթիվ փաստերը ապացուցեցին ընկեր Ստալինի խոսքերը:

Տրոցկիստական բոլոր բանդաները, բանդիտ-լրտես Տրոցկու ղեկավարությամբ միավորված են միջազգային լրտեսական կազմակերպության մեջ, որը ղեկավարում են գերմանական, ճապոնական, իտալական և այլ հետախուզությունները:

### ՖԱՇԻՍՏԱԿԱՆ ԼՐՏԵՍՆԵՐ

Պետք է միշտ հիշել, որ թշնամին ամեն տեղ կարող է լինել, որ ինչ տեսակ գառան մորթի ասես կհագնի, որ իր գայլի ժանիքները թաքցնի: Հիշիր այս մասին ամեն տեղ— և՛ դպրոցում, և՛ ճամբարում, և՛ պարկում, և՛ գետի մոտ:

### ՄԻԼԻՈՆՆԵՐԻ ԴԱՏԱՎՃԻՌԸ

Ողջ երկիրը— բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգենցիան, նրանց հետ միասին և մենք— պիոներներս և դպրոցականներս— բոլոր այդ օրերին ուշադիր կերպով լսում էինք այն բոլորը, ինչ որ տեղի էր ունենում դատական դահլի-

նում: Այնտեղ գերազույն դատարանի զինվորական կոլեգիայի առջև Հայրենիքի դավաճանների մի շայկա, արյունոտ բանդիտների մի շայկա, անհերքելի հանցանշանների ծանրության տակ, ցուցմունքներ էր տալիս իր ծանրագույն հանցանքների մասին հայրենիքի առջև:

Կատաղի չարագործությունների բանդան և նրա ատաման (խմբապետը) Հուդա Տրոցկին իրենց ամբողջ կյանքում պայքարում էին բոլշևիկների կուսակցության դեմ, կոմունիզմի դեմ: Որքան շատ հաջողություններ էր ունենում մեր երկիրը, ընկեր Ստալինի ղեկավարությամբ, այնքան ավելի էր բորբոքվում տրոցկիստ անզգամների կատաղի զայրույթը, այնքան ավելի նողկալի և անարգ էր դառնում նրանց բանդիտական գործունեությունը:

Նրանք Գերմանական ֆաշիստներին խոստացել էին Խորհրդային Ուկրաինան, իսկ Ճապոնիային՝ Պրիմորյեն և Պրիամուրյեն, այլ կերպ ասած, ողջ հեռավոր Արևելքը իր բոլոր անհամար հարստություններով:

Նրանք դավաճանում էին մեր սոցիալիստական հայրենիքին: Նրանք մեր հայրենիքը ծախում էին ֆաշիստներին:

Վա՛յ ԽՍՀՄ-ում կառուցվող մեծ սոցիալիզմի դեմ չարամիտ ձգտում ունեցողներին, վա՛յ Միության ժողովուրդների ազատագրության և երջանկության դեմ չարամիտ ձգտում ունեցողներին:

## ԵՐԵԽԱՆԵՐԸ ՈՂՋՈՒՆՈՒՄ ԵՆ ԴԱՏԱՐԱՆԻ ՎՃԻՌԸ

Նրանք ցանկանում էին կոլտնտեսականներից հողը խլել, նորից կուլակին գյուղի տերը դարձնել, նորից գյուղացիներին կուլակի ստրուկը դարձնել: Բայց այդ նրանց չի հաջողվի: Խորհրդային բազմամիլիոն ժողովուրդը, իր սիրելի առաջնորդ մեծ Ստալինի շուրջը համախմբված, սոցիալիզմի երկրի երեսից կսրբի անարգ թշնամիներին:

## ԿՊԱՏԱՍԽԱՆԵՄ ԻՄ ԴԻՊՈՒԿ ԳՆԴԱԿՈՎ

Երբ թերթում կարդացի հակահեղափոխական տրոցկիստների դատավճիռը, անչափ ուրախացա: Մեր հայրենիքի այդ սրիկա դավաճանները, ֆաշիզմի գործակալները ջախջախիչ հարված ստացան:

Մեր ջոկատի 17 պիոներները վորոշիլովյան հրաձիգներ են: Նրանց հետ միասին իմ դիպուկ գնդակով կպատասխանեմ հայրենիքիս բոլոր զազրելի թշնամիներին և նրանց գործակալներին:

Ի պատասխան դրանց, մենք մեր վորոշիլովյան հրաձիգների խմբակները կխտացնենք նորանոր պիոներներով:

Դրությունը ոչնչով չփոխվեց նաև եվրոպական կապիտալիստների անարգ լակեյ դաշնակների թալանչիական իշխանության օրոք: Ընդհակառակը, նրանք գործադրելով լավ սովորած իրենց «խաղը»— եղբայրասպան կռիվները հարևան ժողովուրդների՝ հայերի, թուրքերի և վրացիների միջև և աշխատավորության կեղեքումը, ահաբեկիչ թալանը, երկիրը և նրա բնակչությանը բնաջնջման դուռը հասցրին:

«Միայն Խորհրդային իշխանության գաղափարը Հայաստանին բերեց խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն» (ՍՏԱԼԻՆ):

Բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ, եղբայրական Վրաստանի և Ադրբեջանի օգնությամբ, Անդրֆեդերացիայի և նրա աննկուն ղեկավարներ՝ անմոռանալի ընկ. Սերգո Օրջոնիկիձեի և հայ ժողովրդի լավագույն բարեկամ ընկ. Բերիայի շնորհիվ երկրի իսկական տերերը՝ բանվորներն ու գյուղացիները մըշակեցին խոպան դարձած հողը, ստեղծեցին սոցիալիստական արդյունաբերություն:

Ինտերնացիոնալ աշխատանքի շնորհիվ վերացված է ժողովուրդների մեջ սրսկած ոտարության թույնը. թուրք, հայ, վրացի, ռուս և այլ բոլոր ժողովուրդները մի հարազատ ընտանիքի անդամ են, որոնց միասնությունն ամրացված է ստալինյան եղբայրական ամուր կապերով, և ամեն տեսակ խտրություն ու տարբերություն այդ ժողովուրդների նկատմամբ պատժվում է օրենքով:

Այսօր Վրաստանի վառվռուն ու կայտառ երեխաները երգում են վերածնվող ժողովրդի ուրախ և ցնծագին երգերը, որոնք լիքն են շնորհակալությամբ և խոր սիրով դեպի ժողովուրդների իմաստուն առաջնորդը, դեպի մարդկության երջանկության ու խնդության դարբինը— դեպի մեծ Ստալինը և նրա հավատարիմ աշակերտ Լավրենտի Պավլովիչ Բերիան:

# Ախալցխահայ կյանքի դրվագներ հին լուսանկարներում

ՀԽՍՀ Պատմության արխիվում պահպանվում են Ախալցխայի շրջանի հայությանը վերաբերող մեծաքանակ լուսանկարներ, որոնք թվագրվում են 19 և 20-րդ դարերով: Նշված լուսանկարները



Զորավար Անդրանիկը մի խումբ Ախալցխացի կամավորների հետ: Վան 1916 թ.:

պատկերում են ախալցխահայ կյանքի շատ դրվագներ, մեզ ներկայացնում տարբեր խավերի անհատների:

Ըստ լուսանկարների կարելի է մոտավոր պատկերացում կազմել հին Ախալցըխայի և նրա մի շարք գյուղերի առանձին թաղամասերի, փողոցների, բնակելի և ոչ բնակելի տների, եկեղեցիների, պատմական այլ հուշարձանների մասին: Կարելի է տեսնել նաև հագուստների այն տեսականին, որը կրել են ախալցխահայ տարբեր դիրք ու հնարավորություն ունեցող անձինք:

Ախալցխահայ կնոջ հագուստը ամբողջությամբ ներդաշնակում էր նրա էությանը, ընդգծում նրա կանացի նրբագեղությունը, ամրությունը, միաժամանակ նաև արժանապատվությունն ու հպարտությունը: Թե հագուստի և թե զարդարանքների տեսականու մեջ զգացվում է գեղեցիկի բացառիկ ընկալումը և չափավորության զգացողությունը:

Ախալցխահայ տղամարդու հագուստը ցուցադրում էր նրա առնական էությունը, տան գլխավորի իր դիրքը:

Սակայն 20-րդ դարասկզբին արդեն բավականին ակտիվանում է եվրոպական հագուստի ազդեցությունը: Լուսանկարներում ազգային տարազի կողքին ավելի հաճախակի են երևում եվրոպական հագուստաձևերը, որոնք կրում էին հիմնականում նյութապես ապահովված. եվրոպական կրթություն ստացած անձինք:

Այսօր էլ մեր նորաձևության մասնագետները կարող են ժամանակակից հագուստներն ու զարդարանքները հարըստացնել ազգային տարազի մանրամասներով, դրանով իսկ խուսափելով համընդհանուր ստանդարտի մեխանիկական կրկնությունից: Դա կօգնի նաև հայ կնոջը երևալ ավելի նազանի, հայ տղամարդուն՝ ավելի առնական...

Հետաքրքրական են ծիսական զանազան արարողություններ, խնջույքներ, սգո, հարսանյաց հանդեսներ պատկերող լուսանկարները, որոնցից գրեթե բոլորում

իրենց արժանի տեղն ունեն երաժիշտները: Երաժշտությունն անպակաս է եղել և ուրախության, և տխրության արարողությունների ժամանակ: Լուսանկարների շնորհիվ այսօր մենք կարող ենք տեսնել ջութակահար Կարապետ Ղազարի Կարապետյանին (Ղազրոյենց Կարոն), դափչի Վաղարշակ Մանասյանին, Ներսես Թութունջյանին:

Ախալցխայի գավառում լայն տարածում ուներ արհեստագործությունը: Արհեստի տարբեր ճյուղերում հայտնի էին բազմաթիվ վարպետներ: Հիշատակության արժանի է Չիֆթալարյանների՝ նշանավոր զինագործների տոհմը: Ար-



Հարսանիք Ախալցխայում



Ախալցխացի կառապաններ

խիվում պահպանվում են Հակոբ, Փաշիկ և Արամ Չիֆթալարյանների լուսանկարները: Առաջինը զբաղվում էր նաև ոսկերչությամբ, դրվագման աշխատանքներով: Չիֆթալարյանների պատրաստած շատ զենքեր այսօր գտնվում են Հայաստանի պատմության թանգարանում:

Ախալցխահայ իրականության մեջ առանձնակի դիրք էին գրավում մեծահարուստ Հազարապետյանների, կալվածատեր Կուպալյանների ընտանիքները:

Ախալցխայում հայ կնոջ լուսավորության, դաստիարակման գործում մեծ դեր է խաղացել Եղիսաբեթյան օրիորդաց դպրոցը: Այն հիմնադրվել է 1870 թվականին Ս. Պարզյանցի ջանքերով (գոյատևել է մինչև 1921 թ.): Ինչպես ժամանակի շատ դպրոցներ, այս դպրոցը ևս հիմնականում պահպանել է իր գոյությունը շնորհիվ հայ եկեղեցու: Դպրոցում ուսանում էին հայերեն, ռուսերեն, հայոց պատմություն, Ռուսաստանի պատմություն, աշխարհագրություն, բնագիտություն, թվաբանություն, երգեցողություն, գեղագիտություն, ինչպես նաև հայ կնոջ համար այնքան անհրաժեշտ կար ու ձև: Մեզ են հասել այս դպրոցի սանուհիների մի քանի լուսանկարներ:

Հավաքածուում կարևոր տեղ են գրավում ազատագրական պայքարի մարտիկների՝ Նիկոլ Մարգարյանի, Չիֆթալարենց Երվանդի, Հարություն Բայբուրդյանի, Միսակ Կարապետյանի, Մարտիրոս Դավթյանի, Լևոն Վարդանյանի և այլոց լուսանկարները: Դրանք կարող են այս շրջանի հայության վերաբերյալ տալ հետաքրքրական շատ տեղեկություններ:

Օգտվելով առիթից, խնդրում ենք բոլոր նրանց, ովքեր ունեն պապերից ու տատերից մեր օրերը հասած լուսանկարներ, կատարել իրենց հայրենանվեր պարտքը՝ հանձնել այդ լուսանկարները Հայաստանի Պատմության արխիվին, որտեղ նրանք կարող են գալիք դեռևս շատ սերունդների հետաքրքրել:

**ԿԱՐԻՆԵ ՍԱՐԳՍՅԱՆ**



# ԱՆՎՃԱՐ ՈՒՂԵՎՈՐՆԵՐ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Արդյոք խոշոր թռչունները իրենց մարմնի վրա տեղափոխու՞մ են փոքր թռչուններին: Թվում է, այսպիսի հարցը միայն տարակուսանք կամ ժպիտ կարող է առաջացնել: Միչիգանի բնության պահպանության ազգային ֆեդերացիայի հրատարակած ամերիկյան «Նեչըրըլ ուայլդլայֆ» ամսագիրը հոդված է տպագրել այս մասին: Հեղինակը բնասեր և ամսագրի խմբագիր Ջոն Կ. Թերեսն է:

Չուի ժամանակ խոշոր թռչունների մեջքին ճամփորդող փոքր թռչունների մասին դեռ վաղուց էին պատմում: Առաջին անգամ Թերեսն այդ մասին լսել է մորից, որն էլ իր հերթին նման պատմություն է լսել իր մորից:

Մի անգամ մի որսորդ գետնից բարձրացնում է իր խփած սագը և նկատում նրա փետուրների միջից ընկած փոքրիկ թռչնակի: Բոլորը կարծում էին, որ նա հնարում է: Իսկապես, ո՞վ կհավատար, այն էլ որսորդի:

1936 թ. Ջոն Թերեսը տեղական թերթում մի ակնարկ է կարդում, ուր հաստատվում էր, որ Բրիտանական Կոլումբիա (Կանադա) նահանգում սպանված կանադական կազարկայի փետուրների մեջ հայտնաբերվել է կոլիբրի (կրետի չափ թռչուն): Նման պատմություն կա անգլիացի գրող Էլ Մարտինի գրքում: Աշնան մի երեկո նրա մոտ է գալիս որսորդ բարեկամը և սեղանին դնում կանադական կազարկա: Հետո, անշտապ, քսակի միջից հանում է... մի կոլիբրի:

— Մի գնդակով երկու թռչու՞ն ես խփել,— հարցնում է Էլը:

— Ոչ, երբ բարձրացրի սագը, կոլիբրին դեռ կենդանի էր: Նա իմ ձեռքերի մեջ մահացավ:

Թերեսը սրան էլ չհավատաց: Բայց տարօրինակ է: Դեպքերը նկարագրված էին տարբեր ժամանակ և տարբեր վայրերում, սակայն խոսքը գնում էր նույն թռչունների մասին: Կանադական կազարկա և կոլիբրի: Կոլիբրի Կանադայո՞ւմ: Չէ որ նրանք տաք երկրներում են ապրում: Այո, բայց դրանց երկու տեսակ ամռանը հանդիպում են Կանադայում (մեկը նույնիսկ Ալյասկայի որոշ շրջաններում): Միչիգանի գիտության համար ոչ թե պատմություններ, այլ փաստեր են հարկավոր:

20-ական թվականների սկզբին անվրճար ուղևորների մասին տվյալներ է տպագրում ամերիկացի բնասեր Էռնեստ Ինգերսոլը: Այս կարծիքը տարածվել է աշխարհով մեկ, և դրանից չի կարելի խուսափել, քանի որ այն տարբեր վայրերում,

օրինակ Եգիպտոսում, Կրետեում, Հուդզոնի ծոցի տարածքում ապրող մարդկանց ուսումնասիրությունների հետևանք է: Նա հիշատակում է նաև աֆրիկյան թռչնաբան Թեոդոր ֆոն Հեյգլինի այդ հարցի վերաբերյալ տված տեղեկությունները: Ինգերսոլը գրում է նաև անցյալ դարի վերջում անգլիական ամսագրում տպագրված երկու նամակի մասին: Շոտլանդացի Ջոն Ռեյը պնդում է, որ Հուդզոնի ծոցի հարավ-արևմտյան ափին ապրող հնդկացիները խորապես համոզված են, որ փոքր թռչունները չվում են կանադական կազարկայի փետուրների մեջ:

Իսկ զինվորական վիրաբույժ Ջեյմս Մերրիլը պատմում է հնդկացիների խորը համոզվածության մասին, թե ամերիկյան և կանադական կռունկները գարնանը չըվում են իրենց վրա փոքր թռչուններ կըրելով:

Այս տեղեկությունները վերաբերում են անցյալին: Իսկ ի՞նչ են պատմում մեր օրերում: Դեռևս 1944 թ. հանրաճանաչ ամերիկացի կենսաբան Մակատին գիտական ամսաթերթում հրապարակեց մի հոդված, որտեղ գրում էր.

«Անվիճելի է, որ որոշ տեսակի թըռչուններ իրենց վրա կրում են սեփական ձագուկներին: Բայց այն հարցը, թե նըրանք չուի ժամանակ փոխադրում են ուրիշ ավելի փոքր թռչուններ, դեռ չի լուծված: Ժողովրդական տեղեկությունները ասում են «այո», բայց գիտությունը այն դեռ անհայտ է»:

Այդուհանդերձ, Մակատին տեղեկություններ է բերում անվճար ճամփորդող մի քանի թռչունների մասին: Ջիբրալթարի շրջանում մի նավապետ հեռադիտակով հետևում է Ամերիկայից Եվրոպա չվող սագերի երամին: Նա նկատում է սագերի մեջքից թռչող և նորից նրանց վրա նստող փոքր թռչունների: Այդ բանը կարող են հաստատել և ուղևորներից մի քանիսը: Մակատիի կարծիքով դա հնարավոր է: Չէ՞ որ շատ թռչուններ նստում են նավի կայմին:

Այո, ժամանակակից թռչնաբանները չեն շտապում ընդունել այդ փաստը: Բայց ոչ բոլոր գիտնականներն են թերահավատ:

Թռչնաբանների բրիտանական միության տպագրած նոր տեղեկատուի խըմբագիր Բրյու Քեմպբելլը կարծում է, որ դա հավանական է, բայց չի կարող սիստեմատիկ բնույթ կրել:

Եվ վերջապես Ջոն Թերեսի եզրակացությունը՝ «Որպեսզի ես լրջորեն ընդունեմ նման պատմությունները, ինձ ապացույցներ են հարկավոր»: Դժվար է դըրան չհամաձայնվել, բայց և այնպես...

Սակայն որ թռչուններն ունեն ապետական պահկվածք իրենց մտերիմների նկատմամբ, անվիճելի է:

---

# ԺՊՐՏՆԵՐ

Բանահյուսությունն ապրում է անեկդոտի տեսքով, որի համար ստալինյան ժամանակներում ոչ միայն աքսորում էին: Ահա անցած ժամանակները բնորոշող և այդ ժամանակների «արագ անդրադարձների» նմուշներ:

Դատավորը դուրս է գալիս դատարանից ու հռհռում:

—Ի՞նչ եղավ քեզ,— հարցնում է գործընկերը:

— Անեկդոտ լսեցի քիչ առաջ:

— Դե ինձ էլ պատմիր:

— Չեմ կարող, պատմողին հենց նոր տասնհինգ տարի տվեցի:

— Էդ ո՞վ է էնտեղ նստած անեկդոտներ հորինում:

— Ով որ հորինում է՝ նա էլ նստած է:

Պետրոս Մեծի ծխամորճը կորել էր: Կանչում է Դոլգորուկովին, որն անմիջապես կարգադրում է.

— Սեննատորովին՝ տանջանքի:

Որոշ ժամանակ անց Պետրոս Մեծը գտնում է ծխամորճը հագուստներից մեկի գրպանում: Նորից է կանչում Դոլգորուկովին.

— Գտա ծխամորճը:

— Բայց Սեննատորովն արդեն խոստովանեց:




— Ինչի՞ համար են նստեցրել:
— Ոչ մի բանի:
— Փչում ես, սրիկա, ոչ մի բանի համար 10 տարի են տալիս, իսկ քոնը տասնհինգ է:

Հայկական ռադիոյին հարցնում են:
— Անելանելի վիճակից ելք կա՞:
— Գյուղատնտեսությանը վերաբերող հարցերին չենք պատասխանում:

— Ինչո՞ւ է մեզ մոտ երաշտ:
— Որովհետև բարձրաձայն շատ երգեցինք «Թող միշտ լինի արևը»:




Նկարները՝ ՄԱՐԻՆԱ ՎԱՂԱՐՇՅԱՆԻ

Լենինն ապացուցեց, որ ժողովուրդը կարող է կառավարել պետություն:
Ստալինն ապացուցեց, որ մի մարդ կարող է անել այդ գործը:
Խրուշչովը՝ որ դա կարող է անել ցանկացած մարդ:
Բրեժնևն ապացուցեց, որ կարելի է ընդհանրապես չկառավարել:

— Հիսուն հազար սկահակի համա՞ր: Խենթանալու բան է:
— Գիտե՞ք, տիկին, որ այն 3000 տարվա է:
— 3000 տարի: Ի՞նչ տարօրինակ կատակ եք անում: Այսօր դեռ 1989 թվականն է:



Նախանձելով Նապոլեոնի փառքին, Բալզակն իր աշխատասենյակում դրել էր նրա կիսանդրին և գրել տակը.
— Նվաճել աշխարհը գրչով, ինչպես նա սրով, բայց չավարտել կյանքը սուրբ Հեղինե կղզում:

Շատ գրողների նշանավոր կենսագիր Անդրե Մորուան ասել է.
— Ինքնակենսագրությունը այն լավագույն ժանրն է, որ թույլ է տալիս ասել ողջ ճշմարտությունը ուրիշների մասին:

Ծոտլանդացիք վաղուց հայտնի են իրենց ժլատությամբ: Եվ ահա մի անգամ դեղատան աշխատողը հուզված վազում է դեղատան տնօրենի մոտ և հարցնում.
— Ի՞նչ անեմ, եկել է ինչ-որ շոտլանդացի և թույն է ուզում: 6 պենսով:
— Ասա, որ թույնն արժե 8 պենս:

# ԱՍՈՒՅԹՆԵՐ

Այն երեխան, որ շանն է տանջում, երբ մեծանա՝ ընտանիքի և հայրենիքի գլխին փորձանք է դառնալու:

**Պյութագորաս**

Մարդկային բոլոր դժբախտությունների պատճառը սուտն է:

**Ստենդալ**

Ամենից դժվար տեսանելին մեր աչքերի առաջ փռվածն է:

**Գյոթե**

Ըստ երևույթին բնությունն ամենաարդար ձևով խելքն է բաժանել, որովհետև ոչ մեկը խելքի պակասից չի դժգոհում:

**Մոնտեն**

Բնությունը մարդուն երկու ականջ և մեկ լեզու է տվել, որպեսզի նա երկու անգամ ավելի լսի, քան խոսի:

**Զենոն**

Բարիքները պահպանելը ավելի դժվար է, քան դրանք ստեղծելը:

**Դեմոսթենես**

Սուտ խոսելն անբարոյականություն է,

սուտ գրելը՝ կրկնակի անբարոյականություն:

**Սենեկա**

Ես Սոկրատեսին շատ եմ սիրում, բայց նրանից ավելի ճշմարտությունն եմ սիրում:

**Պլատոն**

Ճշմարտությունը մեծ է ամեն հաղթանակից:

**Հիպոկրատես**

Զայների մեծամասնությունը դեռևս չի նշանակում անառարկելի վկայություն հօգուտ արդարության:

**Դեկարտ**

Երբ աշխատանքային մի ժամ եմ կորցնում, ինձ թվում է, թե գողություն եմ անում:

**Պաստեր**

Հավաքեց և թարգմանեց

ՍԱՐԳԻՍ ՋԵՐՋԵՐՅԱՆԸ

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:
ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

**«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.**

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 2. 90



*Հանձնված է արտադրության 01.12.89 թ.: Ստորագրված է տպագրության 12.02.90 թ.: ՎՖ 04218: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 51332: Պատվեր՝ 1398: Գինը՝ 15 կոպեկ:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 01.12.89 г. Подписано к печати 12.02.90 г. Формат 70×100 1/16. ВФ 04218. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печат. 2,92 усл. печ.листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 51332. Заказ 1398. Цена 15 коп.

**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.**

**Շապիկի 1-ին էջին՝ ԱՐՏՈ ՉԱՔՄԱՔՉՅԱՆ. «ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆ»:**

Հավերժ փառք և խոնարհում
Մեր Հայրենիքի սահմանները
պաշտպանելիս զոհված հայորդիներ

ՄՈՎՍԵՍ ԳՈՐԳԻՍՅԱՆԻՆ (1961—1990)
ԵՐՎԱՆԴ ՍԱՂՈՒՄՅԱՆԻՆ (1958—1990)
ՏԻԳՐԱՆ ՄԵԼԻՔՅԱՆԻՆ (1957—1990)
ՌՈՒԲԵՆ ԲԱԶԻԿՅԱՆԻՆ (1950—1990)
ԳԵՎՈՐԳ ԶԵՅՆԱԼՅԱՆԻՆ (1962—1990)



Լուսանկարը՝ ԱՐՄԵՆ ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ.

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՒԼՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Հ. (գեղարվեստական խմբագիր):
Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Լ.:

ԻՆԴԵՔՍ՝ 77808

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.